1916 № 23.—Յունիսի 5

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Ներքին տեսութիւն

## ՊԵՏՐՈՍ Հ. ԱԴԱՄԵԱՆ

I

*Տխուր տարի...*

Սուգ է բռնել ամբողջ աշխարհը, բևեռից բևեռ։ Մահեր հաշուելու ժամանակ ու հնարաւորութիւն չըկար։ Ողջակիզւում են ամբողջ ժողովուրդներ։

Առաջնակարգ ողջակէզ և մեծ սգաւոր ենք և մենք, հայերս։ Բիւրաւոր դիակներ ունեցանք, ու դեռ թաղում ենք, թաղում։ Օրուայ մեռելները, թարմերը—եթէ կարող է լինել թարմութիւն մահուան թագաւորութեան մէջ—լափում են մեր ամբողջ սիրտը։ Այլ ևս արտասուք չը մնաց հայի աչքերում։ Արիւն է ժայթքում հայ ողբը։

Այսպիսի մի զարհուրելի ժամանակ մենք յիշատակում ենք և մեր հին մեռելներին, նրանց, որոնք վաղուց են հող դարձել, բայց ապրում են մեզ համար, պիտի ապրեն այսուհետև էլ, մեզ պէս ապրող շատ սերունդների համար։

Երկու ամիս առաջ յիշատակեցինք մեր թանկագին մեռելներից մէկին—Միքայէլ Նալբանդեանն էր դա, յիսնամեայ մի աճիւն։ Այսօր մեր առջև կանգնում է փայլուն և լուսապսակ յիշատակը մի ուրիշ մեծ մեռելի—այս անգամ արդէն քսանհինգ ամեայ։ Դա Պետրոս Ադամեանն է։

Անուններ, որոնք մարմնացնում են ամբողջ մեծ գաղափարներ։ Միքայէլ Նալբանդեան—հայ քաղաքական միտքը։ Պետրոս Ադամեան—հայ բեմական արուեստը։

1891 թ. յունիսի 3-ին էր որ Կ. Պոլսում մեռաւ Պետրոս Ադամեանը։ Հայ բեմի հանճարը, հայ մեծագոյն արուեստագէտը, որի առջև գլուխ էին խոնարհեցնում հայերից շատ՝ օտարները։

Յիշատակել պէտք է այդ տխուր օրը, երբ յաւիտեան փակուեցին հայ բեմի բլբուլի շրթունքները։ Ներկայ տխուր օրերի մէջ մեր մեծ մխիթարութիւնը, մեծ սփոփանքը կարող է լինել մեր մեծ շիրիմներին երկրպագելը։ Ուրիշ ինչ ունինք, որ կարողանայ տալ մեզ դիմանալու, տոկալու, մեր Դողգոթայի ճանապարհը շարունակելու ոյժ։ Այնտեղ, հեռու, խունացած հողադամբարանների մէջ է մեր այն ամբողջ անցեալը, որի վրայ յենուած՝ դուրս ենք եկել մենք էլ մարդկութեան բախտին կցորդ լինելու և համարձակ ու ստիպողաբար տեղ ենք պահանջում մեր գոյութեան համար։

Այսպէս է ամեն մի որոնող ժողովուրդ, մանաւանդ իր տառապանքի օրերում։ Յիշենք ռուս բանաստեղծի խօսքերը.

Нужны намъ великія могилы,
Коль нѣтъ величія въ живыхъ.

Ադամեանի հրաշակերտած, մինչև աստղերը բարձրացրած Հայկական թատրոնը այսօր կազմալուծուած է, ապիկարութեան



† Պ ԱԴԱՄԵԱՆ 1949—1891

մատնուած։ Եւ նա չէ այսօր արժանաւոր յարգանքը մատուցանողը իր փառաւոր հերոսին։

Փակել է նա իր դռներն ու պատուհանները, ցուրտ ու անդգայ, իր բոլոր փեղկերի վրայ, հասարակական թախանձանքով, կախել է «Արշին մալ ալան»...

Հայ մամուլին է մնում իր համեստ պարտքը կատարել

Գնանք, ընթերցող, Ադամեանի մօտ։

II

Բարեպաշտ, կրօնասէր հայ կաթոլիկ ընտանիքի մէջ է ծընուել Պետրոս Ադամեանը 1849 թուին, Կ. Պոլսի Ղալաթիա թաղում։ Շուրջը ամեն ինչ կրօն է, և նրանով էլ տոգորւում է մեր Պետրոսիկը այն վարկեանից, երբ սկսում է ճանաչել իրան, ճանաչել և մարդկանց։ Տան դաստիարակը՝ մի Մխիթարեան վարդապետ։ Դաստիարակ՝ և եկեղեցին, ուր երգում էր, ընթերցուածներ էր անում հրեշտակի պէս գեղեցիկ երեխան։ Վերջապէս դաստիարակ, դարձեալ բոլորովին կրօնական, և Թաղի վարժարանը, ուր նրան տուեց մի կարճ տարրական կրթութիւն։

Սրանից աւել բան չը տուեց Ադամեանին։ Բայց նա մի հասարակ մահկանացու չէր, իր հետ աշխարհ էր բերել մի երկնային առաքելութիւն։ Գեղարուեստի մարդ էր՝ յայտնուել մեր մէջ։ Երեխայութեան վաղ օրերից արդէն երեւում է նրա մէջ միանգամից և՛ նկարչի, և՛ բանաստեղծի, և՛ դերասանի ձիրքը։ Առաջին երկուսի հետ դեռ եկեղեցին կարող էր հաշտուել, բայց երրորդը, ինչպէս մեր ժողովուրդն է ասում, նրա աչքի գրողն է։

Եւ հայրը, Հերոնիմոս Ադամեան, կատարելով մի ջերմեռանդ կաթոլիկի պարտքը, ամեն ինչ անում է՝ որդու մէջ բեմի սէրը խեղդելու համար։

Սակայն արգելքը չէ յաջողւում։ Յաղթում է սէրը, այն էլ բնականօրէն, իր գոյութեան իրաւունքով, առանց բռնութեան և ընդհարումների։ Տասնեչորս տարեկան մի պատանի էր Ադամեանը, երբ առաջին անգամ բախտ ունեցաւ երեւալու բեմի վրայ։ Մի քանի տարուց յետոյ նա արդէն դերասանական խմբի անդամ է։

Եւ այնուհետեւ նրա կեանքը, մինչև գերեզմանի փոսը, մի ահագին գիրք է, հիւսուած սքանչելի էջերից, որոնք մէկիկ մէկիկ պատմում են թէ ինչպէս Ադամեանը ծառայեց գեղարուեստին, թէ ինչպէս գեղարուեստի դիցուհին բարձրացրեց նրան, մեծացրեց յաւիտենական շողերի մէջ պարուրեց նրան, և աշխարհը սիրեց նրան, հիացաւ նրա վրայ։

Սիրուն են այդ մեծ հատորի էջերը։ Որքան բան են ասում նրանք, հրահանգի, խրախոյսի, ոգեւորութեան բաներ։ Մեծ մարդ դարձաւ Ադամեանը, իսկ իւրաքանչիւր մեծ մարդ գերեզմանի միջից առաջնորդող աստղ է ապրող սերունդների մէջ։

Բայց Ադամեանի կեանքի ամբողջ պատմութիւնը դեռ մնում է անտիպ։ Դեռ թաղնուած են մնում մի խոշոր տաղանդի, մի աննման գեղագէտի ապրածը, տեսածը, զգացածը։

Մի երկու թռուցիկ գրուագ այդ մեծ և լուսափայլ կեանքից։

III

Ադամեանը բեմական արուեստին նուիրուեց սրբազան ջերմեռանդութեամբ։ Բայց միեւնոյն ժամանակ նա մնաց և նկարիչ ու բանաստեղծ։ Վրձին, գրիչ և խաղ—ահա ինչ զէնքերով էր Ադամեանը իրագործում հայ աշխարհի մէջ իր երկնային առաքելութիւնը։

Ծնուած էր նա իբրև անսովոր մի տաղանդ։ Ամեն բնածին գոհար անտաշ ու կոպիտ է լինում և մարդու գիտութիւնն է գալիս նրան մշակելու, յղկելու համար։ Ադամեանին պատրաստողը եղել է միայն ինքը, Ադամեանը։ Կրթութիւն ու դաստիարակութիւն նրա ընտրած ասպարէզի վրայ շատ էր հարկաւոր, բայց նա, ինչպէս տեսանք, միայն տարրական ուսումով մտաւ կեանքի մէջ։ Եւ եթէ մեծամեծ յաղթանակներ խլեց կեանքից, այս միայն իր ինքնաշխատութեան, իր ինքնակրթութեան միջոցով։ Ադամեանը ինքն իրան կատարելագործող ու բարձրացնող աշխատանքի դիւցազն էր, և այդ պատճառով կրկնակի թանկագին և սիրելի է նա իբրև ազգային արժէք։

Բեմ էր բարձրանում նա իբրև Ղալաթիայի կաթոլիկ հայ եկեղեցու մի—լուսագոյն դէպքում—ձայնեղ տիրացու, իսկ բեմից իջնում էր իբրև գեղարուեստի տաճարի համաշխարհային և փայլուն աստղերից մէկը։

Ի՞նչպէս եղաւ այդ։

Նա շարունակ կարդում էր, շարունակ ուսումնասիրում էր։ Չէր քնացնում իր փայլուն ընդունակութիւնները։ Ճարտար կառուցանող էր, հարուստ ըմբռնողութեան, գեղեցիկ ճաշակի տէր։ Եւ գլխաւորը—խոշոր ստեղծագործական ինքնուրոյնութիւնն էր։

1884-ին Ադամեանը Պետրոգրադում ներկայացրեց «Համլետ», և այս առիթով «Искусство» հանդէսը գրում էր. «Առաջին անգամն է որ այսօրինակ մի բան ենք տեսնում ռուսական բեմի վրայ։ Վատ չէր լինի, եթէ մեր «արքունի» դերասանները հետեւէին և բան սովորէին իրանց հայազգի արուեստակցից, որ անտարակոյս թէև չունի դիպլոմ, բայց ունի արուեստագիտական ճաշակ և դերասանական կորովի տաղանդ»...

Ահա ինչ էր ինքն իրան պատրաստած Ադամեանը։ Իր ցեղի մի հին, բնատուր շնորհքն էր նա իւրացնում իր այս փառաւոր

յաղթանակի մէջ, ուր առաջնակարգ պետութեան կայսերական թատրոնի ընտրեալ և կրթուած դերասանները դասի էին հրաւիրւում հայ ինքնուսի մօտ։

Աւելի վեհ պատկեր երևակայել անգամ չէ կարելի։

## IV

Ինքնազարգացման դիւցազնը, արտիստին յատուկ ճակատագրով, թափառումներ շատ ունեցաւ։ Պոլսից Թիֆլիս, Անդրկովկասի հայաբնակ քաղաքները, այնուհետև Ռուսաստան, Աստրախանից մինչև Պետրոգրադ, մինչև Օդեսսա, մինչև Անդրկասպեան երկիր, այնտեղից դարձեալ Պոլիս և Զմիւռնիա։

Այս բոլոր տեղերում նրան սիրեցին, պաշտեցին։ Ամեն տեղ փառքի դափնիներ էր հնձում հայ բեմի հանճարը։ Դիւթում էր մանաւանդ նրա գեղեցիկ, փափուկ ձայնը։ Սիրում էին և օտարները, նոյն իսկ հայերից ոչ պակաս, սիրում էին մանաւորապէս ռուս դերասանները, որոնք խմբով գնում էին նրա ներկայացումներին։ Մոսկուայում նա մի անգամ դափնէ պսակ ստացաւ հասարակութիւնից, բայց այդ պսակից մի հատ տերև էլ չը մնաց, որովհետև դերասաններն ու դերասանուհիները մի-մի պոկել էին և վերցրել իրանց հետ իբրև հայ արուեստագէտի յիշատակ...

Եւ ամեն տեղ Ադամեանը տանում էր հայ լեզուի յաղթանակը։ Ջերմ հայրենասէր էր նա, իր մայրենի լեզուին սիրահար և նրան իր արտասանութեան մէջ հաղորդում էր սքանչելի քընքշութիւն և նուագայնութիւն։ Ռուս հասարակութեան առաջ նա խաղում էր հայերէն և ֆրանսերէն լեզուներով։ Թէև վերջինիս էլ նա տիրապետում էր մի ֆրանսիացու չափ, բայց և այնպէս ռուս քննադատութիւնը աւելի գեղեցկութիւն գըտնում էր նրա հայերէնի մէջ և ցանկութիւն էր յայտնում որ միշտ հայերէն լեզուով խաղայ։

Ադամեանի բարձր ընդունակութիւնները լիուլի գնահատեցին Ռուսաստանի երկու մայրաքաղաքների հեղինակաւոր արուեստագէտ շրջանները։ Թատրոնական առաջնակարգ քննադատները նրան անուանում էին խոշոր տաղանդ։ Այն ժամանակ Եւրոպայում հռչակուած դերասաններ էին Էռնեստո Ռոսսի և Թոմազզօ Սալվինի, որոնք Ադամեանից առաջ ներկայացումներ էին տուել Պետրոգրադում և Մոսկուայում։ Ռուս քննադատները համեմատում էին Ադամեանին այդ աշխարհահռչակ արուեստագէտների հետ և գտնում էին, որ Շէքսպիրի «ՀԱՄԼԷՏ» և «ՕԹԵԼԼՕ» պիէսների մէջ Ադամեանը հաւասարակից է Ռոսսիին և Սալվինիին

Բատուր հանճարն էր միայն որ հմայում էր Ադամեանին տեսնողներին։ Անձնական բարեմասնութիւնները պակաս կախարդական չէին։ Բարեկիրթ, քնքոյշ, ընկերասէր, ազնիւ մարդ էր նա, թէև փոփոխամիտ ես... Անկեղծ էր, իր քսակը կարօտեալների տրամադրութեան տակ, յաջողութիւնը գլուխ չէր պտտեցնում, նա մնում էր համեստ, իր չունևոր և պակաս շնորհալի ընկերակիցներին և երկրորդական դերասաններին վերաբերւում էր հոգացողութեամբ և ուշադրութեամբ։ Պատմում են որ սա մի անգամ, Կ. Պոլսում հանդիպելով մի աղքատի, հանում է իր պիջակը և տալիս նրան, ինքը մնում վերարկուի մէջ։ Հարուստների վերաբերմամբ իրան պահում էր կատարեալ արժանապատուութեամբ։

## V

1888-ի վերջերում Կ. Պոլսի մէջ կատարուեց Ադամեանի բեմական գործունէութեան 25 ամեայ յոբելեանը։ Յաջորդ տարին նա ներկայացումներ է տալիս Զմիւռնիայում, և ահա այդտեղ յայտնուեց չարագուշակ և սոսկալի հիւանդութիւնը—կոկորդի քաղցկեղ։ Սարսափահար արտիստը տեսաւ որ արագ զրկւում է իր ամենագեղեցիկ մի զարդից—իր հմայիչ ձայնից։ Հիւանդութիւնը գնալով սաստկացաւ։ Աւելացաւ և թոքախտը։ Դանդաղ մեռնում էր Ադամեանը։

Եւ ահա մեծ արուեստագէտի այս տխուր վերջում երևան է գալիս հայ կեանքի ամենազզուելի երևոյթներից մէկը։ Ադամեանը մոռացուած է, անխնամ ընկած։ Պոլսի հայ բուրժուազիան և էֆենդիների դասակարգը կատարեալ գազանային անտարբերութիւն են ցոյց տալիս։ Կարօտ է Ադամեանը, աղքատ, իր բեմական ընծաներն է ծախու հանում, բայց բժշկական ծախսերը շատ են։ Ռուսական դեսպանն է խղճում Ադամեանին և ի սէր այն յարգանքի, որ տածում էր ռուս հասարակութիւնը դէպի հիւանդի խոշոր տաղանդը, հրամայում է ընդունել նրան ռուսական հիւանդանոցի մէջ և առանձին խնամքով պահել։ Եւ հիւանդանոցի ռուս բժիշկները, հանդիպելով ծանօթ հայերի, յանդիմանում էին նրանց, որ լքել են իրանց մեծ մարդուն։ Իրաւունք ունէին։

Միայն ռուսահայերն էին, որ յիշեցին Ադամեանին։ Մեր լաւ մարդկանցից մէկի, Ալէքսանդր Մելիք-Ազարեանի նախաձեռնութեամբ մի գումար հանգանակուեց և ուղարկուեց մահամերձ արտիստին։

Ամեն բան զուր էր այլևս։ Սոսկալի հիւանդութիւնը սպանեց իր զոհին, դառն տանջանքներից յետոյ։

Միայն այժմ Կ. Պոլսի հայութիւնը ոտքի կանգնեց՝ իր լքած մեծ մարդուն... փառաւոր կերպով թաղելու համար։

Հայի տխուր ճակատագիր։ Նա չը խնայեց և Ադամեանի պէս մի հազուագիւտ գոհարը, որի նմանը դեռ ես չերևաց հայ կեանքի մէջ։

## VI

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական շինութիւնը Թիֆլիսում, գրադարանական դահլիճին կից սենեակի մէջ, ունի մի անձուկ ու խղճուկ անկիւն, նուիրուած Ադամեանին։ Երկու պահարան, պատերի վրայ նկարներ, պատերի տակ իրեր ու կիսարձաններ... Սեղանների և վանդակապատի մէջ սեղմուած այդ անկիւնը դժուարութեամբ ես մտնում։ Բայց և այնպէս, հազիւ տեղաւորուելով մի աթոռի ծայրին, կարելի է ամբողջ րոպէներով առանձնանալ մէկ հայ արուեստագէտի հետ, նրա այս աղքատիկ անկիւնում։

Իրեր են չորս կողմդ—բեմական ընծաներ, լուսանկարների կոյտեր, Ադամեանի վրձինի և մատիտի գործերից մի երկուսը, նրա գրքերը, նրա նամակները. նոյն իսկ նրա համար արտագրուած դերերը։

Լաւ միտք է ունեցել այդ իրերի նուիրողը, որի անունը գրուած է խոշոր տառերով—Ալէքսանդր Ստեփանեան։ Պէտք էր դրանով Ադամեանի թանգարանի հիմքը դրուէր։ Բայց հոգացողութիւն չեղաւ, ուրիշ տեղեր եղած այսպիսի իրեր չը հաւաքուեցին և այս ձեռնարկութիւնը մնաց այսպէս առանձնացած ու խեղճ։

Բայց մեծ շնորհակալութիւն և այդքանի համար։ Սրբելով այդ նուիրական յիշատակների վրայ նստած բարակ փոշին և ահա մենք Ադամեանի հետ ենք դէթ մի քանի րոպէ, զգում ենք նրան, նրա մեծ հոգու ներկայութիւնը այդ լռիկ թղթերի, շրջանակների, նկարների մէջ։

Տեսնում ենք մի անհետացած սերունդ, մի անյայտացած ժամանակ. թէ ինչպէս էր նա սիրում Ադամեանին, ինչքան սրտառուչ յուշարձանների մէջ է պարուրել իր համակրանքն ու հիացքը։ Ջեր դէմքին այսօր էլ բուրում է այդ պահարանների մէջ խառցած մի վեհութիւն—երախտագէտ, պաշտող սիրտ, որի նման մի սքանչելիք չունի մարդկութիւնը...

Եւ այդ համատարած յարգանքի, այդ անկեղծ պաշտամունքի մէջ մեծ արուեստագէտն է իր հոգեկան ժպիտներով, իր համակրանքներով, իր փայլքներով ու քմահաճոյքներով։

Զգում ես նրան, տեսնում ես նրան, միանում ես նրա հետ, վայելում ես նրա Աստուածային յաւերժութիւնը, որ սքանչելագործ է նոյն իսկ այս փոքրիկ ու խեղճ անկիւնում...

Լէօ



## Պ. ԱԴԱՄԵԱՆԻ ՁԵՌԱՑԱԳՐԻ ՆՄԱՆԱՀԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՊԵՏՐՈՍ ԱԴԱՄԵԱՆԻ ՍԵՆԵԱԿԸ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆՈՒՄ

—

*Հանգուցեալ Պետրոս Ադամեանի սենեակի իրերի մեծ մասը, անցնում է իբրև նուէր նրա բարեկամ պ. Աղէքսանդր Ստեփանեանին։*

*Սա ցանկանալով անմոռաց պահել հանգուցեալի յիշատակը 1914 թուականի հոկտեմբերի 17-ին իր գրութեամբ նուիրում է այդ իրերը Կ. Հ. Բ. Ը.-թեանը պայմանաւ, որ այդ իրերը պահուին Ընկերութեան գրադարանում առանձին պահարանում։ Խորհուրդը շնորհակալութեամբ և սիրով ընդունում է։*

*Իրերի թիւը՝ 328 գրքեր, իւղանկար և լուսանկար պատկերներ, ալբոմներ, ժապաւէններ, արծաթեայ պսակ, ձեռագրեր, նամակներ, բարձեր, պատի և թախտի ձեռագործ ծածկոցներ, մութուքաններ և այլն։*

*Նկարներից մի մասը հանգուցեալի նկարածներն են, մի մասն էլ նուիրուած են նրան յարգող նկարիչ ընկերներից։ Այսպէս՝ նուիրել են Այվազովսկին և Զանկովսկին իւղանկ և Մանկովսկայան ջրանկ նկարներ. նաև մեր հռչակաւոր նկարիչ Բաշինջաղեանի նկար՝ Արարատ սարը հեռւեալ մակագրութեամբ. «Մեր յայտնի դերասան Ադամեանին-գիմնագիոնի մի խումբ հայ աշակերտուհիներից, Թիֆլիս 1886 թ.»։ Կան բազմաթիւ նկարներ, որոնց մէջ Ադամեանը նկարուած է զանազան դերերում։*

*Գեղեցիկ են Ադամեանի 2 կաւէ արձանները, որոնցից մէկը պատից կախելու, իսկ միւսը սեղանի վրայ դնելու համար է։*

*ռացաձեգրերի մէջ կան հանգուցեալի նամակները՝ ուղղուած զանազան անձերի և ստացած պատասխաններն ու գրութիւնները։ Նա խնամքով հաւաքել է լրագրական այն տեղեկութիւնները, որոնք վերաբերել են իրա խաղերին։*

*Վերոյիշեալ իրերը գրադարանի առանձին բաժանմունքում տեղաւորուած են 2 առանձին պահարաններում մակագրութեամբ՝ «Հանգուցեալ դերասան Պետրոս Ադամեանի իրերը, նուիրած պ. Աղ. Ստեփանեանից»։ Պատկերներից մեծերը կախուած են պատերից, իսկ բարձերն, ծածկոցներն և այլն դասաւորուած են այնպէս, որ առանձին սենեակի տպաւորութիւն է թողնում։*

X.

## ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒՆ ՊԵՏԱԿԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ։

—

*Արդէն չորս տարի է, որ մայրենի լեզուի խնդիրը արծարծւում և լրջօրէն քննւում է մանկավարժական գրականութեան մէջ։ Միջին դարում երեխան ծնւում էր ֆրանսիացի, իտալացի, գերմանացի, բայց և այնպէս կրթութիւն էր ստանում եկեղեցու պաշտօնական լեզուով—լատիներէնով։ Մայրենի լեզուն վտարուած էր դպրոցներից։*

*Նոր դարը յարութիւն տուեց երեխաներին կրթուել մայրենի լեզուով։ Սկզբում այս սկզբունքը զգուշութեամբ էին պաշտպանում, յետոյ աւելի կտրուկ և ազդեցիկ տոնով էր նոյն միտքը քարոզւում։*

*Մանկավարժութիւնը պահանջում է, նախ տալ ծանօթ, մօտիկ, հոգուն սիրուժելի նիւթեր և յետոյ միայն անցնել հեռու, օտար և դժուար նիւթերին։ Պէտք է քննել, ուսումնասիրել մանկան հոգին և ինչ որ նրա հոգու էական երանգն է կազմում, նախ այդ էականը մշակել և զարգացնել և յետոյ միայն հայրենականի, ընտանեկանի վրայ պատուաստել հեռուն, օտարը։*

*Մանկան հոգու ամենամօտը, ամենահարազատն է մայրենի, իր սովորական գործածական լեզուն. նրա ոգին այդ լեզուի միջոցով է արտայայտւում։ Այդ պատճառով էլ պէտք է մայրենի լեզուն հիմք ընդունել դաստիարակութեան և ուսուցման։*

*Հեշտից-դժուարը, մօտիկից-հեռուն, ծանօթից-անծանօթը-մանկավարժական երկար դարեր շարունակ ընդունելի սկզբունքներն այդ են թելադրում։*

*Եթէ մի պետութեան մէջ հանդուրժելի են զանազան ազգեր, եթէ նրանց թոյլ է տրուած իւրատեսակ կուլտուրայ ստեղծել, ապա այդ դէպքում անհրաժեշտօրէն այդ ազգերի լեզուին կրթական գործօնի յատկանիշ պէտք է տալ։ Մեր պետութեան մէջ զարմանալի կերպով այս երկու դրութիւնների ներդաշնակ համադրութիւն չի ստեղծուել։ Մեր պետութիւնը թոյլ է տալիս ազգային եկեղեցի, ազգային դպրոց, ազգային զանազան կուլտուրական հաստատութիւններ. Նրանց նպատակն է ժողովրդի հոգեկան իւրայատկութիւնների զարգացումն և մշակումը, սակայն դրա կողքին, նրա հետ միասին չի քաջալերւում ազգային լեզուն կրթութեան մէջ։ Սա մի շատ ցաւալի թիւրիմացութիւն է։ Ազգային կուլտուրական անցեալով և հաստատութիւններով ազգու-ցեղերի լեզուն այսպիսի անուշադրութեան չպէտք է մատնուէր։*

*Տեսնենք փաստերից մէկի մասին։ Առնենք ներկայի պետական դպրոցը։ Թաթովախօս մանուկը նոր ոտ է դնում նախակրթութեան բացած տարրական դպրոցը և ահա նրան հարկադրում են նրա ականջին և հոգուն օտար և անծանօթ լեզուով խօսել։ Երկար ժամանակ է կորչում մինչև որ երեխան կարողանում է մտաւորապէս հասկանալ ռուսաց լեզուով պատմածները։ Այն ինչ, եթէ մայրենի լեզուով լինէր ուսուցումն այդ տարիներում, այդ կերտը կարող կըլինէր իմացութիւնների ահագին պաշար հաւաքել և մտաւորապէս զարգանալ։ Մայրենի լեզուով հիմքը դնելուց յետոյ միայն ռուսերէն լեզուն կարող է հեշտութեամբ և հիմնաւոր իւրացուել։*

Նախարարութեան տարրական դպրոցը այս ուղղութեամբ բարեփոխութեան քայլեր է ուզում կատարել. յոյս ունենանք, որ ապագայում այս շարժումն աւելի է զօրեղանալու։

Սակայն բարեփոխութեան այս ձգտումներից իրեն հեռու է պահում պետական միջնակարգ դպրոցը։ Իր գոյութեան սկզբից մինչև այժմ նա իր միջից վտարել է մայրենի լեզուն, աւելի ճիշտ է ասել, արհամարհել է։

Ինչու. որովհետև ստորին դասարաններում կրթութիւնը մայրենի լեզուով չի կատարւում, որովհետև մայրենի լեզուն չի շարունակւում մինչև վերջին դասարանը, որովհետև շատ քիչ ժամեր են յատկացուած, որովհետև մայրենի լեզուի դասերին յաճախելն ազատ է յայտարարած, և այլն և այլն։

Դպրոցական վարչութիւնների այս վերաբերմունքը չի կարող բացասաբար չազդել աշակերտութեան վրայ։ Վիճակագրական տեղեկութիւնները ցոյց են տալիս, որ օտար ազգի աշակերտների մի զգալի տոկոսը չի սովորում մայրենի լեզուն։ Ահա և թուեր, որ բերում ենք Բագուի «Արև» օրաթերթից։

1911 թուին վարժարաններում (գիմնազիաներում) սովորել են 3255 հայեր, ռէալական դպրոցներում՝ 1003 հոգի, առաջին տիպի դպրոցներում հայերէն սովորել են 2698 հոգի, իսկ երկրորդում՝ 761 հոգի, այսինքն աշակերտութեան մօտ 80 տոկոսը։

Պետական ստորին միջնակարգ դպրոցներում սովորել են մօտաւորապէս 98 հազար հայ երիտասարդներ, որոնք սակայն բաւարար չափով չեն սովորել մայրենի լեզուն։

Այս արդէն մի շատ ցաւալի երևոյթ է։ Այս կերպ ուր կարելի է հասնել։ Դպրոցի նպատակն է՝ եղած հիմունքներն աւելի մշակելով անհատին՝ նախ ազգային և ապա համամարդկային կուլտուրական աշխատանքին մասնակից անել։ Ներկայ միջնակարգ դպրոցը չի բաւարարում այդ կարիքներին. նա ընդհակառակն անհատներին հեռացնում, օտարացնում է մայրենի լեզուից և կուլտուրայից։

Եթէ ազգեր կան և այդ ազգերի գոյութիւնն ընդունելով նրանց անկախ և ազատ զարգացմանը հնարաւորութիւն է տրւում՝ այն դէպքում առաջին տեղերից մէկը պետական դպրոցներում մայրենի լեզուին պէտք է տալ։

Ներկայ պատերազմի հետ մանաւանդ մանր ազգերը լուսաւոր ապագայի հեռանկարներ են բացել. նոր կեանք է գալու՝ ազատ զարգացման նորանոր հնարաւորութիւններ։

Մայրենի լեզուի յարութեան խնդիրն օրն այդ նոր կեանքի հետ իհարկէ կըբացուի, բայց և այնպէս մենք պէտք է պատրաստ լինենք այժմեանից և ապագայ բարեփոխութիւնների իդէալների ընտանիքի մէջ պատուաւոր տեղ տանք մայրենի լեզուի բարեփոխութեան խնդրին։ Պետական վարժարանը պետութեան մէջ ապրող ազգերի կուլտուրական վերածնութեան որոտաններից մէկը պէտք է լինի։ Եթէ նա այդ ուղղութեամբ չի աշխատում, նշանակում է չի բաւարարում տեղական կարիքներին։

Մինչև իսկական բարեփոխութեան օրերը մենք որոշ աշխատանք պէտք է այժմեանից սկսենք։ Պէտք է արծարծենք մայրենի լեզուի խնդիրը և մինչև հիմնական բարեփոխութեան օրը բարեփոխութեան առաջարկներ անենք։

Գ. Էղիլեան

## ՓՈՔՐԻԿ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՀԷՔԻԱԹԱԿԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Մօտ եօթն ամիս անցել է այն օրերից, երբ Կրծանիս գնացինք Ծուրինեանի կալուածքը նորեկ որբերին այցելութեան։ Ցոզնած, մղձաւանջից շշմած փոքրիկների խմբակը մեզ շրջապատեց։ Շատերի աչքերի էին ցաւում, շատերի երեսներն ու գլուխները խոցոտուած, շատերը տպաստարանի մի սենեակում հիւանդ պառկած, մասամբ իրենց կեանքի վերջին օրերում ու ժամերում։ Սոսկալի էր այս մանկական փոքրիկ աշխարհից ստացած տպաւորութիւնը։ Նրանց մօտեցաւ ի միջի այլոց մի ունեւոր տիկին մէկին որդեգրելու ցանկութեամբ։ Պէտք էր տեսնել, թէ՝ ինչպէս այդ շուարած դառնուկները մօտենում ու «ես էլ կուգամ, ինձ էլ տար» խօսքերով աղաչում, պաղատում էին տիկնոջը, «մի հիւանդ հէր ունեմ, կը մեռնի» և այլ նմանօրինակ դիմումներով։

Իսկ հիմա. հիմա բարի ոգիները հազար ու մի փորձանքներից ազատուած, այս փոքրիկ աշխարհը սիրոյ հրաշքով դարձրել են մի չքնաղ հէքիաթական աշխարհ։ Այս առոյգ թզուկների շինած գեղեցիկ անակում, պարտէզի մէջ դուք կը տեսնէք թզուկների շրջանում «Ցնած գեղեցկուհի» երեք տարեկան չքնաղ Անահիտին, որ իր սիրուն խաղ ու պարով «թզուկների» հիացմունքի ու սրտագին գուրգուրանքի առարկայ է դարձել։ Այնպէս տոտիկ-տոտիկ, այպէս գողտրիկ նազանքով է պարում Անահիտը, որ հասակաւորներիս անգամ հիացնում է։ Թզուկներն իրենց խըրճիթների շուրջը բանջարանոց են շինել, բողբոջներն առատ բերք են խոստանում և գոյնզգոյն դրօշակով զարդարուած գրաւում են այցելուների ուշքը։

Երեկոյեան ամբողջ խումբը մօտի բլուրը բարձրացաւ, դրացի որբանոցի երեխաներին հրճուանքով դիմաւորեց. խաղացին, զուարճացան ու վերադարձան։

Հենց որ մթնեց, փոքրիկները ննջարան գնացին, իսկ մեծ աղջիկները բոլորուեցին ձեռագործի սեղանի շուրջը զուարթ տրամադրութեամբ։ Մենք էլ նստեցինք. որբանոցի սիրուած վարժուհիներից մէկն առաջարկեց, որ իրենց անցեալից բաներ պատմեն։ Մինչև այդ օրը երեխաները խուսափել են իրենց կորցրած սիրելիների մասին խօսք անել. առանց արտասուքի չէին կարողացել նրանց անունը տալ կամ լսել։ Բայց այսօր յանկարծ բացուեց նրանց լեզուն ի զարմանս վարժուհու։ Մէկը այնպիսի հումորով պատմեց իր փախուստի արկածները, որ ընկերութիւնն առանց քրքիջի չէր կարողանում լսել։ Նա պատմեց թէ ինչպէս գերմանուհի միսիոնարուհին իրենց փախցնել ուզեց Վանից ծովով, ինչպէս ճանապարհին հրացանաձգութեան ենթարկուեցին, թուրքերէն «ալման, ալման» աղաղակեցին, բայց այդ չօգնեց. մի քանիսը մեծերից սպանուեցին, մնացեալները թաղնուեցին, վերադարձան Վան, այնտեղ վերադարձած թուրքերին գերմանուհիներ ձևացան, ապա թէ ինչպէս ազատուեցին նաև ռուսների վտանգից, երբ թուրքերը դարձեալ փախան։ Մէկն էլ պատմեց տառապանքներն ու կորուստները Վանից—Իգդիր տաժանելի փախուստին։

Վերջը լսեցինք, թէ ինչպէս «Ցնած գեղեցկուհուն» որբանոց են բերել ութը տարեկան եղբօր հետ, թէ ինչպէս վերջինս պինդ գրկած լինելով քրոջը, մեծ դժուարութեամբ թողել է սրա կեղտոտ հագուստը փոխելու, վախենալով մի գուցէ երկուսին միմեանցից զատեն։ Այնուհետև երբ Անահիտը հիւանդացել է, փոքրիկ եղբայրը երեք օր քաղցած է մնացել, քրոջը մի վայրկեան առանց ուշադրութեան չի թողել, կասկածելով թէ մի գուցէ իրանից զատեն։

Արհաւիրքների բովից ելած այս մանկական աշխարհում որքան շատ են նմանօրինակ երևոյթները, որ միայն հէքիաթների մէջ էին պատմւում։ Նորանշան կարգով սերունդ պատրաստւում։

Յ. Տէր-Միրաքեան

## ՇԱԲԱԹԸ ՉՈՐՍ ՕՐ ՊԱՍ

Պետական Դումայում ընդունուել է օրէնք, որով շաբաթուայ մէջ չորս օր մսի վաճառումն արգելւում է։

## ԳԱՒԱՌ

ՇՐՎԻՆԱՆՑ.—Մայիսի 5-ին պետական դպրոցների տեսուչը (инспекторъ народныхъ училищъ) պ. Մ. Ի. Ատմանուկի այցելեց Շրվինանցի դպրոցը և ներկայ եղաւ բոլոր դասարանների ռուսաց լեզուի, իսկ 5-րդ բաժանմունքում ռուսաց պատմութեան և Ռուսաստանի աշխարհագրութեան դասերին։ Մանրակրկիտ վերստուգումներ կատարեց այդ առարկաներից, իսկ թուաբանութիւնից հայերէն լեզուով խնդիրներ վճռել տալուց յետոյ տեսուչը շատ գոհ մեկնեց, թողնելով այդ մասին արձանագրութիւն։

***

ՍԱՋԽԵՐԷԹԻՑ պ. Մ. Սահաթեանը գրում է.—Մայիսի 24-ին, մեծ հրդեհ պատահեց։ Հիմնովին այրուել են հայերի 2 տուն, վրացիների 2 տ., իսկ հրէաների 100-ից աւելի տներ։ Ընդհանուր վնասը հաշւում են մօտ կէս միլիոն։ Հրդեհից փախչելիս և տներից իրեղէններ տեղափոխելիս հայերի վնասը հաշւում են 1500 ռ.։ Մարդկանց վնաս չէ եղել։

***

ՂԱՐԱՔԻԼԻՍԱ.—Կիրակի, մայիսի 22-ին, տեղիս ակումբի ամարային դահլիճում կայացաւ Խորէն աւ. քահ. Խանզադեանի ուսուցչական 40 ամեայ և հասարակական գործունէութեան 50 ամեայ յոբելեանը։ Եթէ չեմ սխալւում սա առաջին յոբելեանն է, որ տօնւում է հայ գիւղում, և պէտք է ուրախ լինել, որ այդ պատուին արժանացաւ հայր Խանզադեանը, որը իր աշխատութեամբ, օրինակելի գործով կարծես 60-ական թուականների գործիչների շառաւիղն է։

Մ. Ղարաքիլիսան, որը այդ ժամանակ մի չնչին գիւղ էր Փամբակի հովտում, սկսում է կամաց կամաց ծաղկել շնորհիւ երիտասարդ Խանզադեանի, որը օժտուած էր խոր ու զգայուն հոգով. համակուած Ստ. Նազարեանի և Միք. Նալբանդեանի գաղափարներով, աշխատում է գիւղում ևս տարածել նրանց վեհ գաղափարները, որոնց մոլեռանդ երկրպագուն էր Խանզադեանը։ Հարկաւ նա ուսուցիչ կարգուելով դպրոցում և քահանայ ձեռնադրուելով նրա բեռը անչափ ծանր պիտի լինէր. սակայն՝ հայր Խորէնը կարողանում է իր առանց այն էլ քիչ ժամանակից մաս հանել գիւղացութեան համար։ Եկեղեցու բեմը նրա համար ոչ միայն Տիրոջ փառաբանութեան, այլ և քարոզչի բեմ էր, որտեղից նա տարածում է լոյս գիւղացութեան խաւերում։ Ի զուր չէ, որ Ղարաքիլիսայում բոլորը—ծերունուց մինչև մանուկը—յարգում էին տէր հօրը։

Յոբելեանական հանդէսին խօսեցին.

1) Տէր-Խաչատրեան-ուսուցչութեան կողմից, պ. Մոճոռեան-Ալէքսանդրապոլի հայ դպրոցների կողմից, պ. Լ. Ջոհրաբեան-Մ. Ղարաքիլիսայի հոգաբարձութեան կողմից, պ. Ա.-Թիֆլիսի Գայիանեան օր. դպրոցի կողմից։

Ստացուեցան շատ հեռագրեր և բաւական նուէրներ թէ հիմնարկութիւններից և թէ առանձին անհատներից։ Ստացուեց նաև կոնդակ Ամենայն Հայոց Կաթողիկոսից։

Երգում էր յաջողութեամբ ծխական դպրցի խումբը պ. Մանդասարեանի ղեկավարութեամբ։

Վերջը ի պատիւ յոբելեարի ընթրիք տեղի ունեցաւ մօտ 70 երկու սեռի անձերի մասնակցութեամբ։

Ս. Սիսակեան

***

### ՍԵՒ-ՔԱՐ.

### ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ԿՐԱԾ ԶՐԿԱՆՔՆԵՐԻՑ

—

Գաղթականների դրութիւնը տեղումս օրէց օր ծանրանում է։ Իններորդ ամիսն է նոցա Սև-քար տեղափոխելը, և այդքան ժամանակամիջոցում թշուառները դեռ չը գիտեն իւղ, պանիր տասծը ինչ գոյնի է։ Գարնանից սկսած նոցա իւղն ու պանիրը խոտն է, բանջար, իծկաթ և այլն։ Բացի բանջար ու խոտերից, ուրիշ կերակուրի համ չգիտեն։ Թանը, որ մեր մէջ ձրի էր, այն էլ չի գտնւում. եղածը հաւաքում է խանութպանը և փութը 20 կոպ. ծախում։ Էլ անպէտք, լղար մսեր չի մնում, բոլորը խեղճ գաղթականների վրայ են սաղացնում։ Օտար տեղից եկած մթերքները, ինչպէս է ձէթ և նման իրեր, խանութպանը առնում է էժան և թանգ գնով գաղթականներին տալիս։

Նպաստի ալիւրից կտրում են, գողանում են քաշի մէջ, շորից, սապնից կտրում, մէկին երես են տեսնում, մէկին ջոկում, շատին սպառնում, խօսողին անպատւում, հայհոյում, ստնատակ տալիս։

Թէյ, շաքար չի ստանում գաղթականը, իսկ փող տրւում է միայն 7 կոպ., որ շատ քիչ է։ Պատահում է, որ կորստեան տեղերից գաղթականներ են լոյս ընկնում և գտնում իւրայիններին, այդպիսիներին նպաստ չի տրւում։ Մնում են թշուառները ձեռները ծալած, կանգնած։ Նոցանից վկայագիր է պահանջւում. հասկանում է արդեօք փախստական որբ տղան, կամ հայրը թէ ինչ է վկայականը, որ երկար ամիսներ փնտռելով՝ հազիւ է գտել մօրը կամ եղբօրը։

Աշխատանքի օրերը նոր են սկսւում, իսկ այստեղի գաղթականներից աշխատաւորները գնացել են երկիր, մնում են միայն ծերերը, կանայք և երեխաները, բոլորն էլ կարօտ օգնութեան։

Մ. Տէր-Գէորգեանց

---

### ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.

Սաչխերէթից, աւ. ուսուց. Մ. Սահակեանի միջոցով տեղացի հայ օրիորդներ՝ Վարդանուշ և Սոֆիա Բէգլարեանների, Սանդուխտ Մղերբեանի, Վարվառէ Ղազարեանի, Սրբուհի Պալիջանեանի և Նունէ Կաճկաճեանի ղեկավարութեամբ կազմած վիճակախաղից 60 ռ. 50 կ., յանձնելու Ուսուցչական Միութեան որբ երեխաներին խնամող յանձնաժողովին։

Գրողնայից, տեղական Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղից յօգուտ փախստականների 122 ռ. 15 կ.։

Թիֆլիսի փախստ. գլխաւոր լիազօրի դիւանատնից՝ ժամակիր աշխատ. բանտարկեալ Կարապետ Սագաղեանից ստացուած յօգուտ փախստականների 6 ռ. 94 կոպ.։

Նախչիրա-Տկվիբուլեան ընկ.-ից ի հաշիւ Լևոն Փրիդոնեանի 150 ռ.։

Կոստանդին Միխայէլեան Ալիխանեանից 300 ռ.։

***

Ստանալով պ. Ալիխանեանից 100 ռ. մշտական անդամութեան համար՝ շնորհակալութեամբ տուաւ այդ մասին մրցագիր։

***

Խորհրդի որոշումները.—

Մայիսի 27-ին կայացած Խորհրդի նիստում վերընտրուել են նախագահ պ. Ս. Յարութիւնեան, փոխ-նախագահներ՝ Ա. Մելիք-Ազարեան և բժ. Բ. Աղասարեան, քարտուղար՝ Յ. Շահնազարեան, իսկ գանձապահ՝ պ. Գ. Տէր-Պետրոսեան։

***

Թէլաւի ճիւղ։ Անցեալ 1915 թ. վարչութեան կազմը եղել է. նախագահ՝ Յարութիւն քահ. Տէր-Նիկողոսեան, քարտուղար՝ Գարեգին Տէր-Յովհաննիսեան, գանձապահ՝ Գէորգ Նոնեան, անդամներ՝ օր. Աննա Սարգսեան, Քրիստափոր Տէր-Աստուածատուրեան։ Մուտք ունեցել է 745 ռ. 76 կ. և ծախք 638 ռ. 25 կ.։

Կախ-Աւան (Զարաթ. շրջ.)։ Դպրոցական շէնքում կայացաւ Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի ընդհանուր ժողով։ Կայացաւ վարչական անդամների ընտրութիւնը, որին մասնակցում էին 30 հոգի։ Ձայների մեծամասնութեամբ ընտրուեցին վարչ. անդամներ՝ տիկին Հ. Պատրեան, պ. Մ. Մուրադեան, Մ. Պետրոսեան և տ. Անապչեան։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### Կ. Հ. ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ։

*Ղարաքիլիսից—Պարաջեանը.*

Զօրեանը հասաւ տեղս 150 նորեկ որբերի հետ։ Դրամ փոխադրեցէք որբանոցի շէնքի համար։

*Թէոդոսիա—Հայ կանանց շրջանի նախագահուհի Բողդանեանը.*

Հեռագրով յայտնեցէք, բացե՞լ էք արդեօք որբանոց մեր միջոցներով պահելու համար։ Եթէ ոչ՝ ե՞րբ էք բանալու։ Յաջորդ ամսավճարները մտցնելու ենք խուրաքանչիւր ամսի 10-ին։

—

*Դիլիջանից—Վարդանեանը.*

Որբերի թիւը յունուարին 820 էր, փետրուարին՝ 823, մարտին՝ 811, ապրիլին՝ 756 և մայիսին՝ 851 հոգի։

—

*Մուշից—Կարապետունին.*

Երէկ ուղարկեցինք Խնուս 180 որբ, որտեղ կար 40 որբ. թէ շրջանումս գտնուող և թէ նորեկ որբերը մեծ կարիք ունեն հագուստեղէնի։ Մեր ունեցած միջոցներով կաշխատենք ուղարկել բոլորին։ Մանազկերտի և Խնուսի ուղղութեամբ անհրաժեշտ է բանալ մթերանոցներ։

—

*Մանազկերտից—Խրատրն.*

Մայիսի 25-ին քրդերը յարձակուեցին Խնուս գնացող 13 հայի վրայ, որոնք գնում էին ցորեն գնելու, բոլորին կոտորեցին և խլեցին բեռնակիր կենդանիները։ Մայիսի 29-ի գիշերը քրդերը յարձակուեցին միևնոյն տեղում Մանազկերտից ճանապարհուող հայերի կարաւանի վրայ, որոնք գնում էին սննդատու կայաններ բանալու։ Սպանուած է մերոնցից 2 ձի և մէկ մարդ։ Փախստականների կարաւանը անյայտացել է։

—

*Ախալցխայից—*

Ձեր հեռագիրը ստացանք։ Որբերի այստեղ տեղափոխելը յետաձգեցէք մինչև յունիսի 5-ը։ Կուղարկենք մեր ներկայացուցչին։

—

*Ղարաքլիսից—Օթարեանը.*

Խնուսից Գամարեանը հեռագրում է, որ բժիշկ Կուրոյեանը շուտ ճանապարհուի այնտեղ, որի ներկայութիւնը այնտեղ անհրաժեշտ է, մանաւանդ որ բժիշկ Կրէասին կանչւում է Թիֆլիս, հետևաբար որբանոցը և շրջանիս բնակչութիւնը կը մնայ առանց բժշկական օգնութեան։

—

*Ջուլֆայից—Ներսէս եպիսկոպոսը.*

Մեր շրջանում քսան հազար հայ և ասորի կան։ Հարկաւոր է պարենաւորման կայաններ երեք տեղ՝ Սալմաստ, Դիէրում և Բաշկալայում։

—

*X...-ից—Գամարեանը.*

Թիֆլիս ուղարկեցինք Սարիղամիշի վրայով 126 որբ, որոնց մեծամասնութիւնը սասունցիներ են։ Մխիթարը ճանապարհուեց Նազի և Դուդախ սննդատու կայաններ բանալու համար։

—

*Ղարաքլիսից—Օթարեանը.*

Ալաշկերտում կահաւորեցինք միայուն որբանոցի շինութիւն 300 որբի համար. այդ թիւը արդէն լրացած է։ Խնդրում եմ ուղարկէք մի որբանոցի համար մի վագոն ալիւր և 100 պուդ շաքար։

---

## Ք Ր Ո Ն Ի Կ Ո Ն

Ներսիսեան դպրոցի ուսուցչական ամբողջ խումբը ամիսներ առաջ մի գրութեամբ յայտնել էր իւր տեսուչ իրաւաբան պ. Յ. Խունունցին, որ սրա տեսչութիւնը համարում է դըպրոցի համար անօգուտ և վնասակար։ Այժմ այդ երկարատև վէճը վերջանում է փոխադարձ համբոյրով, որով իրաւաբանը և մանկավարժ է դառնում, իսկ մանկավարժները և իրաւաբան։

***

Թոքախտի դէմ մաքառող Կովկասեան ընկերութեան վարչութիւնը երկաթուղու գլխաւորին առաջարկել է իր ծառայութիւնը, որպէսզի Յիմի գիւղում երկաթուղուն պատկանող թոքախտաւորների կայանը կարողանայ այս ամառ օգտագործել։

Թոքախտաւորների ընկերութեան վարչութիւնը յանձն է առնում կազմակերպել տնտեսական և բժշկական մասը և ուղարկում է իր բժշկին։ Երկաթուղու իշխանութիւնը իր կողմից պարտաւորւում է վճարել երկաթուղու ծառայող հիւանդների և նրանց ընտանիքների ապրուստի համար։ Կայանը գործելու է յունիսի 10-ից մինչև սեպտեմբերի 10-ը։ Հիւանդների թիւը կը հասնի 70-ի։

***

Յայտնի հայագէտ ուսուցչապետ և ակադեմիկոս Ն. Մառը այս քանի օր Թիֆլիսումն է և ամսիս 2-ին մեկնեց Վան հնագիտական ուսումնասիրութեանց համար։

***

Կիրակի, մայիսի 29-ին տեղի ունեցաւ կամաւորական IV գընդի հրամանատար Քեռիի թաղումը մեծ հասարակութեան ներկայութեամբ։ Գերեզմանատանը արտասանուել են մի քանի դամբանականներ։

***

Կիրակի, ամսիս 29-ին Կ. Հ. Բ. Ընկ.-թեան նախաձեռնութեամբ կատարուեց Ընկերութեան բարերար Սմբատ Տէր-Առաքելեանի հոգեհանգիստը և շիրմի բացումը նրա մահուան տարելիցի առթիւ։

***

Մայիսի 27-ին կայացաւ Թիֆլիսի նահանգի գործարանաւորների (ֆաբրիկանտ) և գործարանատէրների տնտեսական ընկերութեան անդամների ժողովը, ուր որոշուեց բանուորների համար 5 խանութ բանալ. եղան ընտրութիւններ։

***

Երկուշաբթի, մայիսի 30-ին կայացաւ Թիֆլիսի քաղաքային խորհրդի նիստը, ուր վարչութեան անդամներ վերընտրուեցին Ա. Արղութեան և Մ. Զաքար, ռոճիկները բարձրացնելով մինչև 6000-ական ռուբլու։

***

Կիրակի, մայիսի 29-ին տեղի ունեցաւ Փառաքա գիւղի «Ղեւոնդեան» դպրոցի օծումը ներկայութեամբ հասարակութեան, ուսուցիչների, աշակերտների և դպրոցի բարերար Ղեւոնդ Յակովբեանի.

***

Մայիս ամսուայ ընթացքում Կ. Հ. Բ. Ընկ.-թեան գրադարանից գրքեր են տրուել կարդալու համար—հայերէն 1213 հատ և ռուսերէն 864 կտոր, ընդամենը 2077։

Ընթերցարան յաճախել են 3807 տղամարդ և 2394 կին։ Ընդամենը 6201 հոգի։

***

Երեքշաբթի, մայիսի 31-ին Հաւլաբարի ժողովարանի այգում կայացաւ փախստական որբերի ցերեկոյթը 500 որբերի ներկայութեամբ։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան և Հ. Կենտր. Կոմիտէի Նախագահ պ. Ս. Յարութիւնեանը պաշտօնական գործերով մեկնել է Դիլիջան, Երեւան և Վաղարշապատ։

***

Վրաց մէջ գրագիտութիւն տարածող ընկերութիւնը ճիւղեր է բաց անում Ջախատուրիում և Օզուրգէթում։

***

Պ. Ղեւոնդ Յակովբեանը իր ծախսով վերանորոգել է Փառաքա գիւղի Թիւրքաց մզկիթը։

***

«Մեղու» ընկերութիւնը բանուորուհիների համար հիմնում է փոխադարձ օգնութեան գանձարկղ։

***

Հայ Գրողների Ընկերութիւնը առաջիկայ աշնանից Թիֆլիսում բաց է անում Հայոց գրականութեան երեկոյեան դասընթացք։ Ցանկացողները կարող են այժմեանից ցուցակագրուել։

***

Հայ Գրողների Ընկերութիւնը առաջիկայ աշնանից հրատարակելու է մի պարբերական ժողովածու՝ «Նիւթեր հայոց գրականութեան պատմութեան», տպագրելով հանգուցեալ հայ գրողների նամակները ու այլ գրաւոր յիշատակարանները։

***

Մեր յայտնի նկարիչ պ. Բաշինջաղեանը բացել է իր նկարների ցուցահանդէս ժողովարանի (Собраніе) ձմեռային շէնքում։ Այս պատկերահանդէսը բաց է առաւօտեան ժամի 9-ից մինչև 3-ը։

---

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում այս շաբաթ համեմատական խաղաղութիւն էր տիրում։ Տաճիկների կողմից առաջխաղացութեան փորձեր եղան՝ գլխաւորապէս ծովամերձ շրջանում։ Մինչև որ այստեղ նրանք շօշափելի արդիւնքի չհասնեն՝ գործողութիւնները չեն տեղափոխուի հարաւային գծերը, որովհետև Տրապիզոնը կախուած է նրանց ձախ թևի գլխին և ծովամերձ շրջանի ռուս զօրքը հեշտութեամբ կարող է Թուրքերի թիկունքն անցնել։ Այժմ նրանց յարձակումները Պլատանա քաղաքի շրջանում անյաջող են անցնում։

Հարաւային գծերի վրայ մինչև պարսկական ճակատը թիւրքերը կրաւորական դերի մէջ են։ Ռուսներն այստեղ և գլխաւորապէս Համիդ Դիարբէքրի գծի վրայ իրենց փոքրիկ յարձակումներով շարունակ անհանգստացնում են թշնամուն, սակայն առանց առաջխաղացութեան փորձեր անելու։

Պարսկական ճակատում թշնամին դեռ դիմադրում է ռուսներին Ռեանդուզի և Բաղդադի գծերի վրայ։ Հեռագրերը հակիրճ կերպով յիշատակում են, որ կռիւն այդ կէտերում շարունակւում է կամ որ մերոնք կասեցրել են թշնամու առաջխաղացութիւնը։ Ինչպէս երեւում է, տաճիկներն այս ճակատի վրայ բեկուած չեն մինչ այն աստիճան, որ ռուսները հնար ունենան դէպի Մոսուլ և Բաղդադ իրենց արշաւանքները անարգել շարունակելու։

## ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում անցեալ շաբաթ սկսած առաջխաղացութիւնը իսկական աղէտ դարձաւ աւստրահունգարական զօրքերի համար։ Մի շաբթուայ ընթացքում թշնամու ունեցած կորուստը հաշւում է 250-300 հազար մարդ։ Ռուսների յարձակման գլխաւոր թափը ուղղուած է աւստրիական կենտրոնի դէմ՝ Լուցկ-Վլադիմիր Վոլինսկիյ ուղղութեամբ։ Այդ գծի վրայ ռուսները առաջացել են մօտ 60 վերստ՝ գրաւելով Լուցկ և Տորչին քաղաքները։ Նրանք հասել են Լուցկ-Վլադիմիր Վոլինսկիյ ճանապարհի կիսին գտնուող Զատուրցի գիւղը։

Այս կենտրոնական գծի երկու թևերին, հիւսիսում՝ Կովել-Սարնա երկաթուղու գծի շուրջը և հարաւում՝ Ստրիպի երկու ափերին թշնամին բուռն դիմադրութիւն է ցոյց տալիս՝ կենտրոնի առաջխաղացութիւնը կասեցնելու համար։ Սակայն և այնպէս ռուսները այդ թևերի վրայ առաջ են շարժւում, թէև աւելի դանդաղ տեմպով։

Ամենահարաւային գծի վրայ ռուսները հետզհետէ շրջափակում են Չերնովից քաղաքը։ Գրաւելով Զալեշչիկ քաղաքը, որ Բուկովինայի երկաթուղիների ամենակարևոր հանգոյցն է հանդիսանում, և Սնեատին քաղաքը՝ ռուսները կտրել են Չերնովիցի շրջանում գործող աւստրիացոց զօրքերը հիւսիսային և արևելեան զօրքերից։ Աւստ-

*բիացիներին մնում է միայն քաշուել դէպի յետին գծերը. և արդէն յամառ լուրեր են շրջում, որ նրանք թողնում են Չերնովիցը։*

*Մինչև այժմ ռուսների ձեռքը գերի են ընկել 1 գօրապետ, 2487 սպայ և մօտ 150 հազար հասարակ զինուոր։ Դրա հետ միասին ռուսները գրաւել են 160 թնդանօթ, 300 գնդացիր և այնքան մեծ քանակութեամբ ռազմամթերք ու պատերազմական իրեր, որ մինչև այժմ կարելի չի եղել հաշուել...*

Ֆրանս-Բելգիական ճակատ*ում անցեալ շաբթի վերջին գերմանացիք որոշ արդիւնքի հասան Մաաս գետի աջ ափին։ Նրանք հսկայական զոհեր տալով երեք կողմից յարձակուեցին Վօ գիւղի ամրութիւնների վրայ և կարելով ֆրանսական միւս գծերից գրաւեցին։ Ներկայումս թշնամու ձեռքին է գտնւում Դուամօն-Վօ գիծը, որտեղից ֆրանսացիք աւեր ու մահ էին սփռում թշնամու շարքերում։ Այս գիծը գրաւելուց յետոյ գերմանացիք դիւրութիւններ են ստանում գործելու թէ Սավել և Տաւան մարտկոցների դէմ, որոնք Վերդէնի երկրորդ շարքի ամրութիւնների մէջ են ընկնում և թէ բերդի ներքին ամրութիւնների դէմ։ Ֆրանսացիք շարունակում են կռիւը նախկին կորովով և ոգևորութեամբ։*

*Այս ճակատի հիւսիսային գծերի վրայ շարունակւում են կռիւները անգլիացիների և գերմանացիների միջև։ Այս շաբաթ անգլիացիք յաջողութիւն են ունեցել վերագրաւելու Զիլիբէկի շրջանում իրենց կորցրած խրամատները և թշնամուն զգալի ջարդ տալու։*

Իտալական ճակատի *վրայ սկսում է զգալ ռուսների առաջխաղացութիւնը Գալիցիայում։ Աւստրիական յարձակումները կորցրել են իրենց թափը. ընդհակառակը իտալացիք շատ տեղերում յարձակումների դիմելով՝ սկսել են վերագրաւել իրենց նախկին դիրքերը։*

### ԾՈՎԵՐԻ ՎՐԱՅ

*Այս շաբաթ պաշտօնապէս հաստատուեց, որ Կատեգատի կռւում գերմանացիք կորցրել են «Լիւցով» զրահապատ յածանաւը (28,900 տօն ներքին ծաւալով) և «Ռոստոկ» թեթև յածանաւը (1900 տօն ներքին ծաւալով)։ Երկուսն էլ իրենց տեսակի մէջ առաջնակարգ նաւ էին։ Գերմանական ծովակալութիւնը յայտնում է, որ ինքն այդ կորուստների մասին մինչև այժմ ոչինչ չէ յայտարարել որոշ նկատառումներով։ Վերջիններս երևի այն են, որ «ծովային յաղթանակի» տպաւորութիւնը որքան կարելի է մեծ լինի Գերմանիայում... Ադրիական ծովում իտալացոց փոխադրանաւերը ամսոյս 27-ին յարձակման են ենթարկուել աւստրօ-գերմանական սուզանաւերի կողմից։ Խորտակուել է մի փոխադրանաւ։ Նրա վրայ գտնուած զօրքի կէսը հազիւ է ազատուել։*

*Բացի այդ այս օրերս թեթև ընդհարումներ են եղել հիւսիսային ծովում անգլիական և գերմանական հալածանաւերի միջև առանց որևէ հետևանքի։*

***

# Արտաքին տեսութիւն

## ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ԾՈՎԱՓԵՐԻ ՇՐՋԱՓԱԿԸ (ԲԼՈԿԱԴ)

*Յունաստանի երկդիմի, կարելի է ուղղակի ասել, նենգամիտ քաղաքականութիւնը վերջին շաբթուայ ընթացքում նորից իր վրայ դարձրեց համաձայնութեան պետութիւնների ուշադրութիւնը։ Վերջիններս, որ մինչև այժմ կամայ թէ ակամայ հանդուրժող վերաբերմունք էին ցոյց տալիս դէպի Սկուլուդիսի կառավարութեան մեքենայութիւնները՝ հիմա սկսել են այնպիսի վճռական քայլերի դիմել, որոնք անկասկած պէտք է սթափեցնող ներգործութիւն անեն գերմանական «յաջողութիւններով» արբեցած յոյն պաշտօնական շրջանների վրայ։ Նոր իրադարձութեան անմիջական առիթն է հանդիսանում այն, որ յոյն կառավարութիւնը նախանցեալ շաբաթ առանց դիմադրութեան թոյլ տուեց գերմանո-բուլղար զօրքերին գրաւել Արևելեան Մակեդոնիայի մի քանի մասերը։*

*Այս գրաւման արժէքը հասկանալու համար պէտք է նկատի ունենալ հետևեալ հանգամանքը. Որովհետև դաշնակիցների զօրքին յունական կառավարութիւնն է հրաւիրել Սալոնիկ (Վենիզելոսի օրով) գերմանո-բուլղարական առաջխաղացութեանը դիմադրաւելու համար, ուստի նա ստիպուած էր ճանաչել Սալոնիկի շրջանը իբրև պատերազմական գօտի և թոյլ տալ, որ այդ գօտու վրայ թշնամի ուժերն իրար բաղխուեն, սակայն մի պայմանով, որ Սալոնիկի շրջանից դուրս գտնուած յունական հողերը կռւող կողմերից ոչ ոք չպէտք է ոտք դնէր։ Համաձայն այս պայմանի, օրինակ, Սկուլուդիսը արգելք էր հանդիսանում մի ամիս առաջ, որ սերբ զօրքերը յունական երկաթուղիներով Կորֆու կղզուց տեղափոխուեն Սալոնիկի ճակատը։ Միւս կողմից՝ յունաց կառավարութիւնը բաւական զօրք էր պահում Արևելեան Մակեդոնիայում, որպէսզի այդ կողմի բուլղարները ներս չխուժեն դէպի Կաւալա-Սալոնիկի շրջանը։ Այս վերջին հանգամանքը ապահովում էր դաշնակից զօրքերի աջ թևն ու թիկունքը և նրանց հնարաւորութիւն տալիս կենտրոնացնել իրենց զօրքը բացառապէս սերբական սահմանագծի վրայ։*

*Սակայն նախանցեալ շաբաթ, բոլորովին անսպասելի կերպով բուլղարներն ու գերմանացիք ներս խուժեցին Արևելեան Մակեդոնիա և գրաւեցին Ռուպելբերդը։ Բերդի պահապան զօրքը ոչ միայն դիմադրութիւն ցոյց չտուեց բուլղարներին ու գերմանացիներին, այլ և նրանց ձեռքը տուին բերդի թնդանօթներն ու ռազմամթերքը։ Այս քայլն այլ կերպ չէր կարող բացատրուել, բայց եթէ յունական և գերմանո-բուլղարական կառավարութիւնների միջև կայացած գաղտնի զինուորական համաձայնութեամբ. իսկ այսպիսի մի համաձայնութիւնը համազօր էր դաշնակիցներին պատերազմ յայտարարելուն։*

*Համաձայնութեան պետութիւններն եթէ այստեղ էլ բաւականանային դիւանագիտական մեքենան գործի դնելով՝ նրանք վերջնականապէս կը վարկաբեկէին իրենց թէ յոյն ժողովրդի և թէ ընդհանրապէս բոլոր չէզոք պետութեանց աչքում։ Բարեբախտաբար նրանք այս անգամ այդ միջոցին չդիմեցին, այլ անմիջապէս պատերազմական դրութիւն յայտարարեցին Արևելեան Մակեդոնիայում՝ այդ շրջանը ևս ենթարկելով իրենց զինուորական իշխանութիւնների կոնտրոլին և միաժամանակ պաշարեցին Յունաստանի ափերը՝ պահանջելով անմիջապէս արձակել պահեստի զօրքը։ Այս վերջին միջոցի նշանակութիւնն ըմբռնելու համար բաւական է նկատի ունենալ, որ Յունաստանը գրեթէ իր բոլոր կենսամթերքները ստանում է դրսից և որ առանց ներմուծման այդ երկրի ժողովուրդը մի ամսում քաղցամահ կը լինի։ Եւ իրօք, հենց որ լուր տարածուեց թէ դաշնակիցներն արդէն մի քանի նաւեր են ձերբակալել՝ սարսափ պատեց ամբողջ երկրին...*

Սկուլուդուսի կառավարութեանն այս պայմաններում մնում էր կամ պատերազմ յայտարարել դաշնակիցներին և կամ զօրքը ցրել: Առաջին միջոցին դիմելու նա չվստահեց, ի նկատի ունենալով ընդհանուր պատերազմական վիճակը բոլոր ռազմաբեմերում, որ ամենևին նպաստաւոր չէ Գերմանիայի և նրա զինակիցների համար և թէ յոյն ժողովրդի հակա-բուլղարական տրամադրութեանը: Մնում էր երկրորդ միջոցը, այն է՝ զօրքը ցրելը, որ և տեղի ունեցաւ:

Դաշնակից պետութեանց վերջին քայլերը ցոյց են տալիս, որ Յունաստանը նրանց աչքում այլևս լիովին անկախ տէրութեան համարում չունի: Ճիշտ է՝ իրաւաբանօրէն այդ երկիրը երբէք լիովին անկախ չէ եղել, որովհետև համաձայն 1830 թուին Լոնդոնում կնքուած դաշնադրութեան՝ Յունաստանը գտնւում է Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի հովանաւորութեան տակ, և այս պետութիւններն իրաւունք ունին նոյն իսկ յունական հողի վրայ պատերազմական գործողութիւններ վարել. սակայն չպէտք է մոռանալ, որ այդ իրաւունքները վերոյիշեալ դաշնադրութեան մէջ նախատեսնուել են գլխաւորապէս Յունաստանը Տաճկաստանի ոտնձգութիւններից զերծ պահելու դիտաւորութեամբ և երբէք չեն գործադրուել հակառակ յոյն կառավարութեան շահերի: Ներկայումս դրութիւնը փոխուած է: Դաշնակից պետութիւնները ներկայումս այդ իրաւունքները զէնք են դարձնում յոյն կառավարութեան դէմ և այդ միանգամայն հասկանալի է: Մի կառավարութիւն, որ վտանգի վարկեանին լքեց երէկուայ դաշնակցին, փոխանակ նրա հետ միասին ծառանալու երէկուայ ընդհանուր թշնամու դէմ. մի կառավարութիւն, որ ամբողջ տարի ու կէս է դէմքով ժպտում է դաշնակիցներին, իսկ ձեռքերով ամեն աջակցութիւն ցոյց է տալիս նրանց թշնամիներին մինչև նրանց սուզանաւերի համար կայաններ պատրաստելը, այդպիսի մի կառավարութիւն այլ վերաբերմունքի արժանի չէ:

Ա. Ջամալեան

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆՆ ԵՒ ՀԱՅԵՐԸ

ԱՆԳԼԻԱ. «Арм. Вѣстн.»-ը, խօսելով անգլիացիների վերաբերմունքի մասին դէպի հայերը, մատնանիշ է անում այն հանգամանքը, որ Անգլիայում հայոց հարցով սկսել են զբաղուել աւելի լայն խաւեր, ոչ թէ մի անցողական ու պաշտօնական ձևով կամ գթասիրական զգացումից դրդուած, այլ շնորհիւ հայ ժողովրդի այն հերոսական տոկունութեան, որով նա արժանացել է դաշնակից ազգերի համակրանքին:

Անգլիացի բանուորները հրաւիրում են հայագէտ դասախօսներ՝ ծանօթացնելու իրենց Հայ ժողովրդի անցեալն ու ներկան: Այդ ասպարիզում հռչակ է ստացել տիկ. Բոյեաջեան՝ շնորհիւ իր յաջող դասախօսութիւնների:

Աւելի ջերմ համակրանք են տածում դէպի հայերը անգլիացի կանայք: Զօրավար Ֆրինչի քրոջ կազմակերպած մի երեկոյթին Հայ հերոսն է եղել անգլիացի կնոջ հիացմունքի առարկան:

Բայց այն ճառը, որ արտասանեց լորդ Բրայսը Պարիզի Հայկական գաղութի ժողովում, որը կայացել էր յատկապէս նրա Պարիզ գալու առթիւ, աւելի ուժեղ ապացոյց է, որ հայոց հարցը Անգլիայում, բացի լայն ժողովրդական համակրանք գտնելուց, մտել է մի լուրջ քաղաքական և դիւանագիտական փազիսի մէջ:

Լորդ Բրայսը ասել է ի միջի այլոց. «Հալածուած քրիստոնէական հաւատի համար, տոկուն և հաւատարիմ իրենց կրօնին ու ազգութեան՝ նրանք կրել են ամեն տանջանքներ: Ահա թէ ինչու ենք նրանց սիրում և ինչու համար ամեն մէկը մեզնից պէտք է ոտքի ելնի նրանց պաշտպան հանդիսանալու:

Եթէ Անգլիան և այս անգամ ոչինչ չը ձեռնարկի Հայաստանի ազատութեան համար, առաջինը ես եմ, որ ձեռք կը քաշեմ Անգլիայից, ինձ հետ էլ միասին «ազատամիտները»:

Այդպէս է խօսել քառասուն տարուց ի վեր հայ դատի պաշտպան անգլիացի հայասէրը՝ Մեծ Գլադստոնի արժանաւոր բարեկամ լորդ Բրայսը, և այդ խօսքերը Հայաստանի վերաշինութեան լաւագոյն գրաւականն են:

—

ՖՐԱՆՍԻԱ.—Կառավարութեան Խորհրդի Յանձնաժողովը հրաւիրել է Պօղոս-Նուպար-փաշային ներկայ լինելու առաջիկայ ժողովին՝ կառավարութեան ծանօթացնելու համար հայ ժողովրդի ցանկութիւնները:

—

Պարիզի Հայկական կոմիտէն ապրիլի 12-ին ճաշի է հրաւիրել «Ֆրանկ ու օտարազգի բարեկամութիւն» ընկերութեան անդամներին: Հիւրերի կենացին արտասանուել են ճառեր ի պատիւ նրանց բեղմնաւոր աշխատանքի, որը նպատակ է դրել ծանօթացնելու Ֆրանսիային հայ պատմութիւնն ու քաղաքակրթութիւնը: Արտայայտելով շնորհակալութիւն, հիւրերը ցանկութիւն են յայտնել, որ վերջապէս կազատուի Հայաստանը թրքական լծից:

—

Ապրիլի 13-ին Պարիզում տեղի է ունեցել Ֆրանկ-Հայկական համերգ (կոնցերտ). Նուագուել և երգուել են Ֆրանսիական և Հայկական երգեր, եղանակներ և երաժշտական հատուածներ: Արտասանուել են ճառեր և տաճկահայերի ազատութեան բուռն ցանկութիւններ:

—

Աբբահայր Լեժիէն, որ մեծ յաջողութեամբ դասախօսում էր Մարսէյլում Հայաստանի մասին, այժմ սկսել է իր դասախօսութիւնները Պարիզում, ուր ունկնդիրների մեծ բազմութիւն է գրաւում:

## ԷՋԵՐ ԹՐՔԱԿԱՆ ԳԱԶԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ

Ռուսների Մամախաթունի գրաւումով ազատուած նոյն գաւառի Բակառիչ գիւղացի Գրիգոր Զաքարեան և Խնուս՝ Հոպալ գիւղացի Գասպար Էլբէկեան, 12 և 13 տարեկան որբերը պատմում են հետևեալ մի կարգ աղեխարշ եղեռնագործութիւններ, որոնք իրենց հանգոյն սիստեմով մի անգամ էլ ապացուցանում են կանխորոշուած ծրագիրը:

Մայիսի սկզբին—պատմում է առաջինը, մեր 600 տուն զուտ հայաբնակ գիւղի և շրջակայքի հայոց զէնքերը հաւաքեցին (ի միամտութիւն հայերի նաև մի քանի քիւրդ, թուրք գիւղերի, որոնց յետոյ վերադարձրին) և երկու օր վերջ առաջարկեցին 24 ժամուայ մէջ գաղթելու պատրաստութիւն տեսնել: Նոյն երեկոյեան գիւղի մեծերից 12 հոգի սրախողխող արին հրապարակաւ իրենց գանձերին տիրանալուց յետոյ: Եղան միահամուռ դիմումներ մահմեդականութիւն ընդունելու, բայց իզուր: Միւս առաւօտեան շրջապատուած սինլքոր չեթաների հրոսակներով ի մի հաւաքուեցինք գիւղացիներս: Առաջին անգամ սկսուեց գեղանիների ընտրութիւնը. Մնացեալներս, գայլերից հալածուած հօտի նման, քշուեցինք դաշտ հոն նոր-նոր յօշոտումների ենթարկուելու համար: Զատեցին 15 տարեկանից վեր և անպէտք ծերերից վար եղող տղամարդոց ու բոլորին մեր առաջ, հարազատներիս դժբախտ աչքի առաջ գնդակահարեցին: Գնդակահարելն էլ մի բարերախտութիւն էր, որովհետև եղան քարկոծումներով ու դանակոծումներով սպանութիւններ: Զգիտեմ ինչու... թե-

բեւս մի մի գնդակի արժանի չլինելուս կամ եղեռնագործների յոգնածութեան համար, սարսափահար ցնորուածներիս Եփրատի բաժին հանեցին, հասցնելով կամուրջին բոլորիս գետ լցուցին։

Պատմում է թէ ինչպէս գարնան սառոյցի կտորների հետ, մարդկային դիակները գետի երեսը ծածկած հեղձուողների հնդիւններով կը գնային գահաւէժն ի վար. կամ թէ ինչպէս արիւնարբուները հաճոյքի համար կը բռնէին փոքրիկների ոտքերից առկախ և սուրերով կը թռցնէին ճչացող գլուխները։ Ինքը տեսնելով գալիք տանջալիր մահը, ինքզինք գետը կը գցէ և լողալով գետափի ժայռերին կառչելով դուրս կելնէ, իր հօր ծանօթ քիւրդի տունը կերթայ, նրա անասուններ պահելով մի տեսակ քարշ կըտայ իւր գոյութիւնը մինչև ազատարար ռուսների ու կամաւորների յարձակումը։

Երկրորդը պատմում է, որ անցեալ Համբարձման կտորել են իրենց գիւղերը միևնոյն սահմռկեցուցիչ արարողութիւններով . . . . . . . . . .

Պատմում է թէ ինչպէս հայ կոյս աղջիկներն ու կիները իրենց գրկանոցներով ինքզինքնին գետը կը գցէին լպիրշ չարագործների ձեռքը չիյնալու համար։

Սա իւր հօր և եղբօր տղայի հետ կը տարուին ծանօթ (քիրվա) քիւրդ աղայի քով, որպէս աշխատող սարուկներ։ Մի երկու ամիս վերջ, մի ինչ-որ պատրուակով կ'սպանեն հօրն ու եղբօր տղային, իսկ ինքը փախչելով կը ճողոպրէ և կերթայ Թուրք կանոնաւոր զօրքի բանակը, որպէս ռուսների ձեռքով որբացած քիւրդ լաճուկ (տղայ)։ Թուրք մի սպայ որդեգրելով իւր քով կը պահէ։ Տղան միշտ սպայի հետ դիրքեր լինելով կը ծանօթանայ պայմաններին և մի ցուրտ մահու և կեանքի ռիսկով խոյս կըտայ ռուսական բանակը։

Զարմանալի է այս տղայի գործած անհաւատալի խորամանկութիւնը, որ կարողացել է ամբողջ 7 ամիս ծածկել իւր հայութիւնը և խոյս տալ, բերելով հետը բազում ջարդերի ականատես պատմութիւնը։

Դիլիջան — Տ. Շահբազ.

## ՄԱՅԻՍԻ 6-Ը ՎԱՆՈՒՄ

*(Վերյիշումներ)*

Դրախտանման Վան-Այգեստանը 1915-ի մայիս 1-ը, Աշխատաւորութեան այդ նշանակալից մեծ տօնը, ռումբերի դը՛ժվըժոցի և գնդակների տարափի տակ, խրամատներում, դիրքերի ետև, սուրբ պարտականութեան կատարման ճանապարհին, նուագով, մեծ ցնծութեամբ կատարելուց յետոյ, կատարեց աւելի մի մեծ տօն—հինգ հարիւր տարուայ բռնակալութեան ձեռք ու ոտք պըրկող շղթաներից, սահմռկեցուցիչ լուծից ազատուելու տօնը. այդ մայիս 6-ն էր, որ Վանի պատմագրութեան մէջ անմոռանալի էջ պիտի գրաւէ իւր թողած տպաւորութեամբ։

Դասալիք և 24 ժամուայ մէջ Վասպուրականի հայութիւն բնաջնջելու յուսով տոգորուող Թուրք զօրքն և ամբոխը Ռուս յաղթական բանակի երկիւղից և «րայա» հայերի հերոսամարտից հիասթափուած, դեռ երեք օր էր, քաղաք թողեր, դեռ զօրանոցների և Թուրքական թաղերի սև ծուխը բարձրանում էր, երբ մի քանի սուրհանդակների անհետ կորչելուց յետոյ, վերջի սուրհանդակի աւետած Ռուս բանակի և նրանց յառաջապահ հայ կամաւորական խմբերի Վան. մտնելու լուրն ստացուեց. Վանի մարտիկներն արբեցած ազատութեան շնչով՝ ղեկավարների հրահանգով պատրաստուեցան դիմաւորելու Ազատարար բանակի մուտքը։ Ամբողջ քաղաքում արտաքոյ կարգի հանդիսաւորութիւն էր տիրում. գլխաւոր փողոցների հրապարակները կանաչներով և ծաղիկներով յաղթական կամարներ էր կապուած, որոնց տակ սպասում էին հարիւրաւոր հասակաւոր և 8-10 տարեկան հերարձակ օրիորդներ՝ ծաղկեփունջեր ձեռներին, աւետելու իրենց պատուոյ անարատ ազատութիւնը մարդ-հրէշների լլկումից և և բռնաբարութիւնից, որից դժբախտաբար չ'կարողացաւ ճողոպրել Տաճկաստանի ուրիշ քաղաքների հայութիւնը։

Ապրիլեան գոյամարտը խրախուսող շեփորի (ֆանֆառի) ուղեկցութեամբ, բազմութեան կեցցէների միջից Վանի բոլոր կռուողները կատարեալ զինուորական կարգապահութեամբ քաղաքից կէս ժամ հեռու, Ակոռի կոչուած դաշտը դիմադրելու գնացին երեկոյեան ժամը 7-ին (Ը. Ե.)։ Մի քանի անգամ գոռացին թիւրքերի թողած բերդի թնդանօթները, բոլորի սրտերը թունդ հանելով։ Փոշիների ամպերի միջից երևցան կամաւորական խմբերի ձիաւոր յառաջապահները, Դրօն, Վարդան և իւրայինները։ Գրիչը անզօր է նկարագրելու այն գրկախառնութիւնը, միաժամանակ պոռթկացող ուրախութեան խինդն ու արտասուքը։ Մի վայրկեան ուղեղներ կանգ առան գործելուց. մեզ երազների աշխարհում էինք կարծում։ Եկողներին՝ հեռուից տեսած ծխացող Վանի հոգեւարքի փոխարէն կենդանութիւնը՝ շշմեցրել էր, իսկ դիմաւորողներին՝ ազատարարների մեր մէջ լինելու քաղցր իրականութիւնը։ Պատկերը լրացնում էր թնդանօթների այդքան քաղցր հնչող ընդհատ-ընդհատ որոտը։

Թափորը ամբողջ ճանապարհին ծաղիկներ կոխկրտելով հասաւ Խաչ-փողոց կոչուած ամենագլխաւոր հրապարակը, որ ռմբակոծուեց օրիորդների ծաղկեփնջերից, որին յաջորդում էր ծովանման բազմութեան «կեցցէ»-ները։ Քաղաքը պլպլում էր լուսաւորութեան հրթիռների և ճրագների ճաճանչով։

Սակայն ո՞վ կարող էր երևակայել, թէ այդ բոլորը մի գիսաւոր աստղի պէս արագ անցնելու էր, հետքն անգամ չթողնելով։ Միթէ կարելի էր երևակայել, որ Մայիսի 6-ին այդ ուրախ բազմութիւնը աստանդական գաղթական է դառնալու....։

Բամբախտ հայ իրականութիւն. քո գոյութեան ընթացքում հազիւ ես պատահում այդպիսի երջանիկ վայրկեանների, որոնք դժբախտաբար շատ են վաղանցուկ....։

Իրադեկ.

# Գեղարուեստ

### «ԱՐԻՒՆ ԷՋԵՐ» ԳՐՔԻՑ

VIII

Կը գրկէք մէկ օր գգուումի բոցով
Ձեր դահլիճներում,
Կը գտնէք միմեանց ամօթով, լացով,
Կը հայցէք ներում։

Իսկ մե՛նք! մե՛նք!! իսկ մենք, որ անդա՛րձ կորանք,
Ձեր գոհն անխնայ...
Չքացանք, որպէս մի ծուխ, մի պատրանք,
Ու յետ չենք դառնայ։

Օ՛, երբ դուք նստէք հաշտութեան սեղան
Զինաթափ, բարի,
Յիշեցէք նրանց, որոնք գոհն եղան
Ձեր չա՛ր կամքերի։

Յիշէ՛ք, ո՛, յիշէք կեանքներս մարած
Կսկիծով սուր, սուր...
Եւ թո՛ղ ձեզ ներուի ծով համատարած
Արիւնը մեր զուր։

Գ. Բեալաչեան

IX

*Ճամբի ալմաղթել թիկնոցի վրան*
*Ժանեակ է հիւսել կարմիր հետքն արեան,*

*Ինձ ինչ, թէ ո՛վ է քայլով երերուն*
*Կարմիր ծորելով քաշ եկել հեռուն.*

*Քաշ եկել հեռուն ու նետքից նետել*
*Բոցը իր սրտի, տենչը արիւնթել։*

*Օտար ափերում իմ սիրտը այնքան*
*Ցածել է, կորցրել գանձեր գիւթական,*

*Կողոպտուած, զարկուած կեանքից մահասփիւռ*
*Լացել է, փնտռել կորուստներն իր բիւր,*

*Զարկուել՝ օտարից, մօտիկից՝ աւել,*
*Հարուածի, վէրքի այնպէս և վարժուել,—*

*Որ հիմայ անյոյզ՝ ճերմակ ձեան վրան*
*Դիտում է միայն հետքերը արեան։*

Գ. Բեալաշեան

---

# ԵՐԵՔ ՔՈՅՐ

(Վ. Ժուկովսկու)

## ՄԻՆՈՒԱՆԱՅԻ ՏԵՍԻԼԸ

—

*Մեր ամբողջ կեանքը կըդառնար տաղտուկ և անկապ երազների մի շարք, եթէ ներկայի հետ սերտօրէն չմիանային ապագան ու անցեալը—երեք անբաժան շրջաններ, որոնցից մէկը փոխադարձաբար գեղեցկացնում է միւսին, փոխարինաբար վերցնում է միւսից նրա հրաշագեղութիւնը։*

*Այսօր լրացաւ իմ տասնեհինգ տարին։ Ես զբօսնում էի գետի ափին։ Անցեալի մելամաղձիկ հաճելի յիշողութիւնը համակում էր իմ հոգին. երջանիկ էի ես անցեալում, երջանիկ եմ և այժմ. երջանկութիւն, միայն երջանկութիւն եմ կռահում նաև ապագայի նկատմամբ։ Ինձ համար անցեալը, ներկան ու ապագան միանում, ձուլւում էին մի քաղցր զգացմունքով։*

*Արևը հանգիստ թեքւում էր դէպի կապոյտ բլուրները. վերջալոյսի նրա շողերը ոսկեզօծում էին լճի մակերևոյթը, որտեղ ցրիւ ընկած փոքրիկ կղզիները, արևմուտքի վարդագոյն փայլով լուսաշաղ, երևում էին բոցավառուած ու թափանցիկ։ Երեկոյեան զեփիւռը հով ու զով էր շնչում, ամեն ինչ հանգստանում, խաղաղւում էր. հօտերը դառնում էին դաշտերից, հովւի սրինգը ձայնակցում էր հեռու սոխակին, և փոքրիկ մակոյկով լճի վրայ լողացող ձկնորսի երգը ջրերի ողորկ հայելով ինձ էր գալիս։*

*Ես գնում էի մտազբաղ, ուստի աննկատելի յայտնուեցայ կանաչ կաղնու անտառի մօտ, որ աճում էր սարի վրայ, և յանկարծ առաջս տեսնում եմ երեք երիտասարդ աղջիկ՝ դէմքով անչափ նման իրար, գեղեցիկ ու փթթուն, ինչպէս մայիսեան օր։ Նրանցից մէկը նստել էր դարաւոր կաղնու տակ, թիկնած շուշաններով, երկնա-ծաղիկներով և նոճիով մակահիւսուած սափորին (ուռնային). միւսը անհոգ պառկել էր կանաչ սէզի վրայ, վարդի թփի տակ, իսկ երրորդը նայում էր մայր մտնող արևին։ Սրա աչքերում փայլում էր մի ինչ-որ գերբնական բոց, արևի ճաճանչներով լուսաշաղ հոյակապ դէմքը կարծես մարդկային չէր։ Ես զարմացել էի, չգիտէի, մօտենա՞մ արդեօք նրանց, թէ՞ հեռանամ. բայց աղջիկներից մէկը—նա, որ պառկել էր վարդենու տակ, թեթև հովի պէս վազեց, մօտեցաւ ինձ և ժպտալով ասաց.*

*—«Մի հեռանար, ազնիւ բարեկամ, գնանք, ես ծանօթացնեմ քեզ քոյրերիս հետ։ Նստիր այս վարդենու տակ. իմ վարդերն էլ քո գեղեցկութեան պէս մաքուր են ու քնքոյշ, նրանց անուշ բոյրը գրաւիչ է, ինչպէս քո հոգու անարատութիւնը. իսկ քո կեանքը ոչ այլ ինչ է, բայց եթէ՝ բացուած վարդ. թող յաւիտենական լինեն նրա գրաւչութիւնը, բուրմունքն ու թարմութիւնը»։*

*Իրար ձեռք բռնած, մենք վազ տուինք։ Իմ նոր ծանօթը մի վարդ տալով ինձ, ասաց.*

*—Քո ծննդեան օրուայ նուէր։*

*Մեծ քոյրը—նա, որ նստել էր կաղնու տակ, ուռնային թիկնած, ինձ յառեց իւր մտախոհ հայեացքը, և իմ հոգին ակամայ լցուեց վհատութեամբ, երբ նայեցի նրա ուրախ, բայց և վշտահար դէմքի գծագրութեանը. մի գաղտնի ոյժ ձգում, քաշում էր ինձ դէպի նրա սիրտը, բայց ես չէի համարձակւում մօտենալ և լռում էի։*

*—Դու մեզ չես ճանաչում, իմ ազնիւ բարեկամ, ասաց նա քնքշութեամբ. մենք քոյրեր ենք։ Ինձ ասում են Անցեալ. քեզ վարդ նուիրող միջնակ քրոջս անունն է Ներկայ, իսկ փոքրը՝ Ապագայ. ուրիշ կերպ՝ մեզ կանչում են երէկ, այսօր, վաղը։ Մենք անբաժան ենք. նա, որին սիրում է մէկս, սիրելի է դառնում և միւսներին. մէկիս սրտին զգուելին հաւասարապէս զգուելի է նա և միւսներիս համար։*

*«Ազնիւ Մինուանա, բնութեան հրաշալի էակ, դու մեզ սիրելի կը դառնաս, դու ծնուած ես երջանկութեան համար, սուրբ Նախախնամութիւնը կը պաշտպանի քեզ կեանքիդ ճանապարհին։*

*«Հիմա, երբ նո՛ր միայն ապրել ես սկսում, դու կարող ես և պէտք է սիրես միմիայն իմ Այսօր կոչուած քրոջը, մի հաճելի, աշխոյժ էակ։ Բարեկամս, խաղա այն անուշաբոյր վարդերի հետ, որ նա ուրախ ժպիտով նուիրում է քեզ. գիտցիր, ո՜, Մինուանա, որ նրանց թարմութիւնն ու բոյրը չեն անցնի երբէք, քանի քո՛ տակաւին խաղաղ և մաքուր սրտում կըմնայ անմեղութիւնը։*

*«Բարեկամանալով իմ Այսօր ասուած քրոջ հետ, դու պատրաստւում ես սիրել և՛ ինձ, և՛ իմ Վաղը կոչուած քրոջը։ Կըգայ, կըգայ ժամանակը, երբ կզգաս, որ մեր բարեկամութիւնը անհրաժեշտ է քեզ. ցանկութիւններն ու յոյսերը կըզարթնեն քո խաղաղ հոգում, իսկ ներկայի վարդերը… Երբէք առանց փշերի չեն լինում։*

*«Այն ժամանակ, իմ բարեկամ, իմ անվրդով ու համակրելի Մինուանա, թող քո հովանաւորը լինի ուրախ Վաղը։ Նայի՛ր…նա ցոյց է տալիս քեզ հեռու արևմուտքը. այնտեղ փայլում է փառահեղ արևը, այնտեղ պարզ արևմուտը յիշեցնում է պարզ առաւօտեայ մասին։*

*«Բարկամ, անարատութեամբ հրճուելով ներկայի վարդերով, դու անադարտ մաքուր ուրախութեամբ, անվրդով, խաղաղ յոյսով կսկսես նայել Ապագայի այս գրաւիչ հեռաւորութեանը. ուրախութիւնը և յոյսը անմեղութեան ուղեկիցներն են։*

*«Իսկ եթէ վարդի գեղեցկութեամբ խաբուած, նրա փշերը կը ծակծկեն քեզ, այն ժամանակ, բարեկամ, դէպի իմ քոյր Վաղը ունեցած քո անշեղ վստահութիւնը, հեռաւորի մէջ նրա քեզ յայտնագործած գրաւիչ իրերի վրայ ձգած քո միակ հայեացքը պէտք է մեղմացնեն, քաղցրացնեն քո տանջանքները։ Բայց այսպիսի բերկրանք տանում է միայն անմեղութիւնը։*

*«Երբեմն,—ո՜, թող երկինքը պահպանէ քեզ, իմ անմեղ Մինուանա,—երբեմն, անբարեացակամ բախտը խաւարեցնում է հեռաւորի մխիթարական փայլը, ապագան քօղարկւում է. իսկական ներկան կորցնելով իւր ուրախութիւնը, թախիծ է հագնում…Մինուանա, դէմքով հրապուրիչ իմ քոյրերը փոփոխական են. սիրիր նրանց, բայց զգուշացիր դաւաճանութիւնից։*

*«Փորձութեան այս վարկեաններին, հոգու միայնութեան այդ*

ժամերին ես քեզ հետ կըլինեմ... Իմ մէջ որոնիր քո սփոփիչ բարեկամին։ Ես քոնն եմ. Անցեալն անբաժան է քեզանից։ Իմ ունայնի մօտ կըկենդանանայ այն, ինչ դու կորցրել ես ներկայի մէջ, իսկ ապագայի ուրախ ուրուագծերն էլ կիրականանան այնտեղ։ Իմ ունայնի մօտ, նօճու մթընշաղ հովանու տակ, ապրում է յիշողութիւնը, որը պատմում, խօսում է եղածի ու անցածի մասին. մտազբաղ մելամաղձութիւնը, որի աննղի աղբիւրը թախիծն է, սիրում է միայն անցեալը, մըտքով սաւառնում է գագաղների վրայ և բաղցրութիւն է գտնում մեռածների համար բողոք-վշտի մէջ։ Քո ընկեր անմեղութեան հետ եկ իմ նօճու մթնշաղի տակ և իմ զրոյցի մէջ դու սփոփանք կըգտնես։ Իմ ունայնի մօտ դու կըզուարճանաս ինքդ քեզանով, և ներկայի դէմքից աննկատելի ցած կընկնի տխրութեան քօղը, վշտահար Այսօրը նորից կըժպտայ, իսկ թեթևսօլիկ Վաղը իւր տենչերով քեզ կըթռչի.

«Օ՜, բարեկամս, կըգայ այն օրը, երբ պէտք է թողնել կեանքի այս փթթուն հովիտը. այն ժամանակ ո՛չ բարեկամների վշտագին աղերսները—փոքր ինչ դանդաղել, չհեռանալ, ո՛չ այս հրաշագեղ գոյութեան սէրն ու մտերմութիւնը, որ մարում, անցնում է,—ոչ ինչ չէ կարող պահել քեզ սիրելիներիդ մէջ, որոնց թողնում ես աւիտեան։

«Այն ժամանակ, վերածնուած, լուսոյ նոր փայլում, յաւերժ անբաժան, միասին կապրենք մենք։ Ո՜րքան հիասքանչ շուքով քեզ համար կըպայծառանայ հեռաւոր անցեալը։ Անմահութիւնը, յոյսի և հաւատի արդարացումը կըլինի քո վարձատրութիւնը... Օ՜, Մինուանա, թող քո ամբողջ կեանքն այդ վարկեանը դիմաւորելու պատրաստութիւն դառնայ։

«Գնա՛, բարեկամս, գնա՛ առանց երկիւղ կրելու այն անյայտութիւնից, որով ծածկուած են այս կեանքի ուղիները. երկնային նախախնամութիւնը քեզ պաշտպան։ Հաւատա՛ նրա գոյութեանը, հաւատա՛ նրա վարձատրութիւններին։ Բաղդաւորութիւնը անմեղութեան անբաժանելի բաժինն է. բայց ո՞րտեղ և ե՞րբ... Այդ գաղտնիք է»։

Նա լռեց։ Այդ վարկեանին արևը մայր մտաւ, ու մութը պատեց և՛ երկինքը, և՛ ջրերը, և՛ դաշտերը։ Աչքերով ես որոնում էի չքնաղ դիցուհիներին, բայց իզո՜ւր, տեսիլն անցաւ... Զգում եմ միայն զեփիւռի շնչումը, շուշանների ու վարդերի բուրմունքը. լսում եմ միայն աղբիւրի նուագը, որ խաղաղ հոսում է քարերի միջով, իմ ոտների մօտով։

(Թարգ.) Վ. Արմէն

---

# Գիտական-պատմական

## ՀԱՅԵՐԷՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *)

—

Ինչքան էլ մեր յամբական ոտանաւորների մէջ ևս անշեշտ վանկերն առնում են իբրև տաղաչափօրէն շեշտուած, ինչպէս և ռուսերէնում է, բայց նմանութիւնը միայն այդքան է։ Մեր յամբական ոտանաւորները, ինչպէս յետոյ կը տեսնենք, բոլորովին ուրիշ հիմունքներով առաջ գալով՝ բաւական տարբերւում են ռուսերէնից։ Ռուսերէնի, օրինակ, ութվանկանի քառոտնեայ տողերի ամեն մի ոտքի մէջ ևս,—լինի առաջին, երկրորդ թէ երրորդ,—կարող է անշեշտ վանկն առնուել իբրև տաղաչափօրէն շեշտուած. մինչդեռ հայերէն նոյնպիսի ոտանաւորի մէջ անշեշտ վանկը կարող է տաղաչափօրէն շեշտուած համարուել միայն առաջին և երրորդ վանկերի մէջ։ Հայերէնի սովորական յամբական ոտանաւորի մէջ կարելի է ասել միայն «Մատունք կուսին ամենագեղ» և երբէք «Մատունք ամենագեղ կուսին». մինչ ռուսերէնում երկու ձևն էլ կարելի է գործածել։ Դրա պատճառը, ինչպէս ասացինք, քիչ յետոյ կը բացատրենք։

Արդարև մեր բանաստեղծները (Մանուէլեան և ուրիշներ) երբեմն փորձել են ռուսերէնի ձևով ևս յամբական ոտանաւորներ յօրինել, բայց նրանց նորաձևութիւնը յաջողութիւն չի գտել, որովհետև այդպիսի ոտանաւորները մեծ մասամբ միակերպ են հնչում. պատճառը գլխաւորապէս այն է, որ բանաստեղծները չեն աշխատել միակերպութիւնը վերացնել քորէական և քառադօտ ոտքերի խառնուրդով, որ հնարաւոր է մեր լեզուի մէջ ևս, թէպէտ և ռուսերէնից շատ աւելի պակաս չափով։ Մեր կատարած հետազօտութիւնը Յ. Յովհաննիսեանի, Յովհ. Թումանեանի և Աւ. Իսահակեանի 10-վանկանի տողերի վրայ՝ ցոյց է տալիս, որ այդ տողերի մի խոշոր մասը ռուսերէնի ձևով պարզ յամբական ոտանաւորներ են, այն էլ շատ ռիթմիկ և ոչ միակերպ։

Կախուած է ժայռը ջը՛րերի վըրա՛յ.
Բոլո՛րը վա՛ղն է ա՛նհետա՛նալու.
Գըտը՛տեցնո՛ւմ ես տա՛րափները ձե՛ան.
Այնտե՛ղ թօշնո՛ւմ է վա՛րդը կո՛կոնո՛ւմ (Յովհ.)։
Այն պա՛ղ դիմա՛կն էլ, ո՛ր տեսնո՛ւմ ես դե՛ռ,
Այն էլ հողի տակ կը՛ծածկե՛ն հիմա՛ (Թում.)։
Նա լո՛ւռ յիշո՛ւմ է, ո՛ր տարիք առա՛ջ
Իրա՛ սրտո՛ւմն էլ տե՛նչ կար ո՛ւ կըրա՛կ։
Եւ ո՛վ կարո՛ղ է ու՛րիշի՛ն ըզգա՛լ,՜
Որպէս իր եսը հա՛սկանա՛լ նըրա՛ն (Իսահ.)։
Մեռա՛ծ լուսնա՛կը մե՛նաւո՛ր աղօ՛տ
Սըփռո՛ւմ է շո՛ւրջը ի՛ր շողե՛րը ցուրտ.
Յաւէ՛տ լըռո՛ւմ է մի՛ տըխո՛ւր խորհո՛ւրդ,
Յաւէ՛տ վառւո՛ւմ է մի՛ քնքո՛ւշ կարօ՛տ (Տէրեան)։

Իրենց կազմութեամբ այս յամբական ոտանաւորները կատարելապէս նոյնանում են ռուսերէնի հինգոտնեայ յամբերի հետ, և այդ միայն նրա համար, որ բանաստեղծները չեն պահում մեր սովորական 10-վանկանի ոտանաւորի սքեման, որով պիտի 5-րդ վանկերն անպատճառ շեշտուած լինեին, այլ շեշտում են 4-րդ վանկը և այնուհետ՝ ռիթմական շեշտերը դրւում են միայն զոյգ վանկերի վրայ, 6-րդ և 8-րդ և ոչ 7-րդ վանկի վրայ։ Դժբախտաբար լրագրական սուղ էջերը թոյլ չեն տալիս մանրամասն բացատրելու մեր հետազօտութիւնը և ուսումնասիրութիւնն այս կարգի ոտանաւորի մասին, բայց այսքանը միայն շեշտենք, որ եթէ բանաստեղծների գրչի տակից, հակառակ ընդունուած 5+5 սքեմային, պարզ յամբեր են առաջ գալիս ռուսերէնի (և ոչ գերմաներէնի) ձևով, այդ ցոյց է տալիս, որ մեր լեզուն ընդունակ է այդպիսի ոտանաւորի։ Բաւական է միայն, որ եղած շեշտերը զոյգ՝ (2, 4, 6, 8, 10) վանկերի վրայ լինեին, և մի կամ երկու յարաշեշտ բառեր լինէին տողի մէջ։ Այդ ոտանաւորն աւելի գեղեցիկ է լինում, երբ յարաշեշտ բառն ընկնում է 4-րդ՝ շեշտուած և 5-րդ անշեշտ վանկի մէջ, ինչպէս վերևի տողերում է։ Առաջարկում եմ մեր բանաստեղծներին ոչ 5+5 վանկանի տողերի մէջ պատահաբար գործածել այս յամբական չափը, այլ ամբողջ ոտանաւորներ յօրինել դրանով, համոզուած լինելով որ նրանք շատ աւելի ռիթմիկ, միաժամանակ և լուրջ ու ճկուն մի չափ կունենան, որ կըյարմարուի մտքին ու զգացմունքին։ Այս չափն անպայման ապագայ պիտի ունենայ։ Գրաբարում ունենք բազմաթիւ շարականներ այսպիսի պարզ յամբական ոտքերով յօրինուած, միայն իբրև ազատ ոտանաւորներ։

Մի անգամ որ յարաշեշտ բառերի գործածութիւնը թոյլ է տալիս ռուսերէնի ձևով պարզ յամբական ոտանաւոր յօրինել. նոյնը պէտք է ասել և քորէական ոտանաւորի համար։ Ինչպէս

---

*) Տես «Համբաւաբեր» № 22։

յամբական, նոյնպէս և քորէական ոտանաւորների մէջ ռուսերէնում անշեշտ վանկը կարող է անցնել տաղաչափօրէն շեշտելի վանկի տեղ։

Птичка бо'жія не знае'тъ... Այստեղ бо'жія բառի վերջին վանկը բնականօրէն անշեշտ է, բայց տաղաչափօրէն շեշտուած է համարւում։ Այսպիսի ազատութիւնը, որ չունի գերմաներէնը, թոյլ է տալիս հայերէնում ևս քորէական ոտանաւոր յօրինել, թէպէտ շատ աւելի պակաս չափով քան յամբական։ Մեր հետազօտութիւնը ցոյց է տալիս, որ Իսահակեանի 7-վանկանի տողերից մօտ մի երրորդ մասը, հակառակ ընդունուած սովորական 4+3 սքեմային, պարզապէս քորէական ոտանաւորներ են ռուսերէնի ձևով.

*Ծովը ջուրը կը՝ պաչէ։*
*Ուշք ու միտքըս կը՝ տանի։*
*Քեզ գըրկումըս նինջ սըփռեմ։*

դ) Մինչ պարզ յամբական ոտանաւորներ, ռուսերէնի ձևով, ունենք միայն շարականների մէջ այն էլ իբրև ազատ ոտանաւորներ, անապեստեան ոտանաւորներն ի հնուց անտի գործածական են մեր լեզուի մէջ։ Եւ այս հասկանալի է, այն պատճառով, որ այդ չափը թոյլ է տալիս 1—3 վանկանի բառեր գործածելու։ Այս չափը գործածել է սկզբում Ներսէս Շնորհալին, և այնուհետև ուրիշները։ Նորերից Բագրատունին և Մխիթարեան ուրիշ քերթողներ. աշխարհաբար գրողներից Թերզեան, Գամառ-Քաթիպա և այլն, իսկ նորագոյններից՝ Իսահակեան, առանձնապէս Վ. Տէրեան, նրան հետևելով և ուրիշները։ Եւ որովհետև մեզնում ամեն հին բան միշտ մոռացութեան է տրւում, շատերը կարծում են, թէ Տէրեանն է առաջին անգամ գործածել անապեստեան ոտքերով ոտանաւորը։ Անապեստեան ոտանաւորի էութիւնն այն է, որ պէտք է շեշտուի ամեն երրորդ վանկը։ Ամեն մի շեղում ոչընչացնում է չափը. և դժբախտաբար մեր բանաստեղծները, նոյն իսկ Տէրեանը, յաճախ անում են շեղումներ։

*Սիրուհին սըրտատրոփ նայեցաւ լըճակին,*
*Հասկացաւ դառնութիւն իւր անքախտ վիճակին.*
*«Իրարմէ բաժնեցին մեզ աշխարհ և այս կեանք*
*Գէթ մահով այսուհետ ջրի տակ միանանք»։*

(Գամառ-Քաթիպա)

Միակերպութիւնը վերանում է միայն այն ժամանակ, երբ ռիթմական շեշտերը պահելով հանդերձ՝ գործ են ածւում քորէական կամ քողաղօտ բառեր.

*Ես ընկայ անդունդները խաւար,*
*—Իմ ցընորք, նորից քեզ եմ կանչում։*

Տէրեան

ե) Անապեստեան չափի սկզբի ոտքը եռավանկի փոխանակ երկավանկ դարձնելով՝ առաջ է գալիս երաժշտական տեսակէտով (ոչ տաղաչափական) քողաղօտ ոտանաւոր։ Այս չափն ևս ի հնուց անտի գործածուած է հայերէնում։ Առաջին անգամ գտնում ենք Գր. Նարեկացու, ապա Կոստանդին Երզնկացու և ուրիշների մէջ։

*Երկինք ի յերկիրս և երկիրս ի յերկինքն,*
*Վայրէջք ի խոնարհ և վերելք ի բարձունս...*

Գր. Նար. Տաղ Եկեղ.

*Այս կեանքս է ունայն և ժառանգ ենք մահու,*
*Զունի մեզ դըրունք բարութեան և շահու.*
*Երազ է խաբող և խայալ անցաւոր,*
*Է սուտ սիրելի և ընկեր նենգաւոր...*

Կոստ. Երզնկ.

Ամփոփելով մեր եզրակացութիւնը՝ տեսնում ենք, որ մեր լեզուի մէջ դակտիլական ոտանաւոր չկայ և հնարաւոր չէ գրել։ Քորէական ոտանաւոր ռուսերէնի ձևով հնարաւոր է. բայց այդպիսի անկախ ոտանաւորներ, բացի մի երկու փորձից, որ արել են Սեդրակ Յովհաննիսեան և ուրիշներ, չունենք. և չենք կարծում թէ մեր լեզուն շատ ընդունակ լինի այդպիսի ոտանաւորների։ Յամբական ոտանաւորների, ռուսերէնի ձևով, ընդունակ է մեր լեզուն. բայց մեր բանաստեղծները չեն գրում այդպիսի անկախ ոտանաւորներ։ Անապեստեան և քողաղօտ ոտանաւորների նոյնպէս ընդունակ է մեր լեզուն և հին ժամանակներից ի վեր գրուել են այդպիսի ոտանաւորներ։ Վերջերս այս երկուսից առանձնապէս մշակւում է անապեստեան ոտանաւորը։

Մեր՝ պարզ ոտքերով կազմուած ոտանաւորները սակայն միայն այդ տեսակներով չեն սպառւում. այլ ունենք նաև անապեստեան ոտանաւորներ մի յամբի խառնուրդով։

Երաժշտական երկի մէջ ևս երբեմն մի որոշ չափով յօրինուած տակտերի մէջ մտնում է մի տակտ, որ իր չափով տարբերւում է հարևան տակտերից, և կամ զանազան չափերի տակտեր փոփոխակի յաջորդում են միմեանց (փոփոխակի տակտեր)։ Սրա համապատասխան ձևով նաև ոտանաւորի մէջ կարող են տարբեր ոտքեր մտնել միանման ոտքերի յաջորդութեան մէջ. գերմաներէնում անապեստեան ոտանաւորները նոյն իսկ քիչ անգամ անխառն անապեստեան ոտքերով են կազմուած լինում, այլ մեծ մասամբ յամբերի հետ խառն են լինում. բայց այնպէս որ անապեստեան շարժումն իշխող է լինում։ Մեր ոտանաւորի մէջ ևս գտնում ենք այս խառնուրդը։ Անապեստեան ոտանաւորի մէջ մտնում է մի յամբական ոտք, կամ հաստատուն դրութեամբ միշտ մի որոշ տեղում, կամ շարժուն դրութեամբ.

*Անցանէ մեծութիւն և փ ա ռ ք աշխարհիս,*
*Աւերի և քակտի շ ի ն ո ւ ա ծ տաճարիս...*

Մկրտիչ Նաղաշ.

Եւ այսպէս ամբողջ քերթուածը, որ յօրինուած է անապեստներով, միայն երրորդ ոտքը միշտ յամբական է։ Այս յամբական ոտքը կարող է լինել շարժուն դրութեամբ և երրորդ և չորրորդ տեղում, ինչպէս՝

*Դէպի վեր, սարն ի վեր... Ա ն վ ե ր ջ է ուղիս.*
*Ցօղնեցան բաղուկներս այս կուռումն ա ն դ օ ր...*

Յովհաննիսեան

Այսպէս և յամբական ոտանաւորի մէջ հաստատուն դրութեամբ մտնում է մի անապեստ.

*Հոգի, ա չ ե ր ո ւ ս ես լոյս,*
*Երբ որ ի մ դ ի մ ա ց ն ելնուս.*
*Փախչիս ե ր բ ո ր գ ի ս տ ե ս ն ո ւ ս,*
*Աղճա քո գերւոյս, իմ լոյս։*
*Մարմինս ա ն հ ո գ ի վանց քեզ,*
*Հ ո գ ի ս ա ն դ ա դ ա ր հետ քեզ...*

Կոստ. Երզնկ. Քերթ.

Աւելի հետաքրքիր է յամբ-անապեստեան ոտանաւորը փոփոխակի ոտքերով, համապատասխան երաժշտութեան փոփոխակի տակտերին։ Մի չափ, որ շատ սիրուած է եղել հին ժամանակ, բայց բոլորովին անծանօթ է մնում մեր նոր բանաստեղծներին, գործ են ածել Գր. Նարեկացին, Շնորհալին և գրեթէ բոլոր միջնադարեան երգիչները՝ Քուչակ և ուրիշները։ Դա «հայերէն» կամ հայրենի» կոչուած չափն է։ Այդ չափի էութիւնը մենք ուրիշ տեղ բացատրել ենք. և շատ բան պէտք էր ասել մանրամասնութիւնների համար, բայց այստեղ միայն այս ասենք, որ ոտանաւորը կազմւում է 15 վանկից, միջին 7-րդ վանկից յետոյ ունենալով հատած, որով տողը բաժանւում է երկու կիսատողերի, որոնք կարող են առնուել և իբրև առանձին տողեր։ Ոտքերը կազմում են յամբի և անապեստի հաւասար թուով խառնուրդ հաստատուն դրութեամբ. յամբ, անապեստ, յամբ—անապեստ, յամբ, անապեստ։ Ռիթմական շեշտերն անպայման պիտի լինին առնուազն չորս հատ և

5. 7. 10. 15.-րդ վանկերի վրայ, իսկ 2 և 12-րդ վանկերը կարող են նաև չեշտուած չլինել.

Գիւլպիւլն ի յէգին մտաւ | ի վերայ վարդին Թառեցաւ.
Երաց գիւր բարի բերան | և ասաց մինչ որ լուսացաւ...
Իմ եարն ի հարանց տանէն | հանց ելաւ քանց նաւն ի ծովէն...

(Վերջը միւս անգամ) Մ. Աբեղեան։

## ՈՒՏԻՔ

Ապրիլի 4-ի երեկոյեան պ. Ե. Լալայեանը Ազգագրական Ընկերութեան դահլիճում կարդաց հետաքրքրական զեկուցում Ուտիների մասին։

Ուտիք ասելով ներկայումս հասկացւում է Նիժ ու Վարդաշէն գիւղերը իրենց շրջականներով, որոնք ընկնում են Նուխուայ գաւառում, որոնց բնակիչները՝ ներկայումս թւով 12,800 են ընդամենը։ Յարգելի դասախօսը ծանօթացրեց ունկնդիրներին այս գիւղերի տեղի, դիրքի, կլիմայի, մշակութեան պայմանների, ազգաբնակութեան զանազան տարրերի, պարապմունքների և մանաւանդ՝ նրանց հասարակական ինքնուրոյն կազմակերպութեան և իւր նկարագրութիւնները լուսաբանից իւր իսկ ձեռքով պատրաստած լուսանկարներով։

Ապա անցնելով Ուտիների հնախօսութեան և պատմութեանը, յայտնեց, որ ինքը 1914 թուին գնացել է Ուտիք պեղումներ կատարելու։ Այնտեղ գտել է երկու տեսակի հնադարեան գամբարաններ, որոնցից յարգելի զեկուցանողն այն եզրակացութեան է եկել, որ Ուտիքի նախնական բնակիչները ցած կուլտուրայի մարդիկ են եղել և նրանց ծանօթ է եղել միայն երկաթը։ Իրենց ծագման մասին տեղացիները առանձին աւանդութիւն չունին, իրենք իրենց անուանում են Ուտի կամ Բշտօն (քրիստոնեայ). օտարի հետ խօսելիս՝ իրենք իրենց հայ-էրմէնի են անուանում, իսկ իրենց մէջ եղած օրթոդոքս դաւանութեան պատկանողներին՝ Գիւրջի. միմեանց հետ խօսելիս իրենք իրենց կոչում են խալէկ՝ այսինքն մօրեղբայր։ Դասախօսը մէջ է բերում հնուց՝ Ստրաբոնի և Խորենացու ժամանակից սկսած՝ բոլոր տեղեկութիւններն ու կարծիքները Ուտիների մասին մինչև մեր օրերը։ Ստրաբոնի և Խորենացու տուած պատմական տեղեկութիւնների վրայ յենուելով պէտք է կարծել, որ Ուտիները Աղուան ազգի մի ցեղն են։ Ուսուցչապետ Էրխուալը նրան վարեակներից, ֆիններից է ծագած համարում։ Մխարանը նրանց Ուրարտացիներից մնացորդ է կարծում։ Վերջնական որոշ նմանութիւնների վրայ հիմնուած կան կարծողներ, որ Ուտիները Չինո-Մանջուր ծագում ունին։ Պ. Լալայեանը միանալով Էրգերտի և Գիոի կարծիքներին՝ ընդունում է, որ Ուտիները Դաղստանի լեռնաբնակ ժողովուրդների մի ճիւղն են, նրանց ցեղակից և հին Աղուան ազգի մնացորդ։

Սակայն Ուտիների ոչ միայն ծագումը, այլև անցեալ պատմութիւնն էլ շատ մութն է. Խորենացու և Կաղանկատուացու տուած տեղեկութիւնները շփոթ են. նրանք պարզում են միայն այն, որ Ուտիները հայերի միջոցով վաղ ժամանակներից քրիստոնէութիւն են ընդունել և ժամանակի ընթացքում աւելի և աւելի ենթարկուելով նրանց ազդեցութեանը, ձուլուել են նրանց հետ։ Այնպէս որ նրանց հետագայ դարերի պատմութիւնը մի տխուր էջ է այն մասին, թէ ինչպէս այս փոքրիկ բայց հետաքրքրական ժողովուրդը չդիմանալով շրջակայ ժողովրդների, մանաւանդ մահմեդականութեան բռնութեանը՝ զանազան հատուածների է բաժանւում, քայքայւում է։ XV դարից Ուզուն Հասանի օրերից սկսած մահմեդական բռնութիւնը ծայրայեղ աստիճանի է հասնում. անլուր վայրագութիւններ են գործում Նուխուայ խաները, որի հետևանքը լինում է այն, որ շատերը մահմեդականութիւն են ընդունում. այս է պատճառը, որ ներկայումս Նուխուայ շրջանի թուրք տարրը ուտիական-հայկական դիմագծեր ունեն և պահել են յիշողութիւն այն մասին, որ իրենք բռնի կերպով են ընդունել մահմեդականութիւնը. իսկ քրիստոնեայ մնացող ուտեցիները ստիպուած են եղել մետաքսի հարկ տալ խանին կրօնն ու եկեղեցին փրկելու համար։ Նոյնպիսի աններելի միջոցներով VIV դարի սկզբից ռուս և վրացի հոգևորականութիւնն աշխատել է ուտեցիներին պրաւոսլաւ դարձնել և Եղիշէ առաքեալի վանքը խլել հայ լուսաւորչականներից։ Յովհաննէս Կարբեցին էլ իւր ընչաքաղցութեամբ առիթ է տուել, որ մօտ 100 տուն Վարդաշէնցիք Գիւրջի, պրաւոսլաւ դառնան։

1904-ին ուսուցչապետ Դիրը կազմել է Վարդաշէնի բարբառի քերականութիւնը. 1902 թուին ուտերէն լեզուով, բայց ռուսերէն տառերով կայ թարգմանած Աւետարանը, որը միակ նմոյշն է ուտիական գրականութեան։ Առաքել Մնացականեանը, այժմ հանգուցեալ, ճեմարանաւարտ մի պարոն, կազմել է ուտերէնի բառարանը, իսկ Լալայեանը հաւաքել է ուտիական բանահիւսութեան բոլոր մնացորդներն անխտիր, որոնց կցել է հայերէն թարգմանութիւնը և ապա այդ շրջանում գտնուող հայերէն ձեռագիրների մի ցուցակ։

Ունկնդիրները ցանկութիւն յայտնեցին կազմակերպել մի հրապարակական դասախօսութիւն ուտիների մասին և այդ աշխատութիւնը տպագրութեամբ լոյս ընծայել։

Մ. Խոստիկեան

# Մամուլ

## ՌՈՒՍ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ.

Ռուսաց Պետրոգրադի «Սովրեմէննոյէ Սլովօ» լրագիրը գրում է.

«Բելգիացիք, սերբերը, սև-լեռնցիք ունեն թէ իրանց պետութիւնը, թէ իրանց երկիրը. լեհացիք և հայերը չունեն ինքնուրոյն պետութիւն։ Բայց ունեն իրանց երկիրը. հրէաները չունեն ոչ թագաւորութիւն, ոչ երկիր, բայց այս համաշխարհային ահռելի անցքերը հաշուի չառան ցեղերի այդ զանազանութիւնը։

Դժուար է իսկապէս որոշել, թէ այդ ազգերից որի դրութիւնն այս պատերազմի ժամանակ վատթարագոյն է։

Մենք պարզամտութեամբ հաւատում էինք, որ մարդկութեան այլ ևս չեն պատահիլ առաջուայ սարսափները. մենք հաւատացած էինք, որ կուլտուրան ու ոճրագործութիւնը իրար հակառող բաներ են։

Հայերը յամենայն դէպս այդ հաւատը չունէին. աւերում, կործանում և կոտորում էր տաճիկների ամենասիրուած կառավարելու մեթօդներից մէկը։

Հայերը մեղանչել էին տաճիկների աչքին արդէն նրանով, որ վերջիններից աւելի աշխատասէր, աւելի գրագէտ և աւելի կուլտուրական ազգ էին։ Բայց այդ հայերը այլադաւան են։

Անչափ դժբախտ են այն հայերը, որոնց կոտորեցին տաճիկները և քիւրդերը հարիւր հազարներով, բայց կենդանի մնացած հայերին, այդ խաւարի մէջ, մնում է լուսաւոր մի աստղ—մեծ յոյս։

Այն մեծ յոյսն ունի հայ ազգը—որ վերջնականապէս կազատուի թրքական լծից, որ նա կունենայ նոր կեանք և կը վերածնուի և ահա այդ հանճարեղ, աշխատասէր, ողջամիտ և հին կուլտուրայի խմորումն ունեցող ազգը, ի հարկ է թէ ապագայ վերածնութեան բոլոր իրաւունքները թէ աջողութեան բոլոր նշաններն ունի։

Երկար տառապանքներ են կրել հայերը վայրենի քիւրդերից և մոլեռանդ տաճիկներից։ Բայց այդ բոլոր տանջանքները չեն մեռցնիլ հայերի մէջ և այժմ ոչ եռանդ, ոչ էլ հաւատ դէպի լաւագոյն ապագայ։ Եւ այդ անմահ հաւատը ակներև է մեզ համար հայերի բոլոր քայլերում և հասարակական հանդէսներում»։

Տ. Աթարէգեան։

***

«Новое Время»-ն իւր մի առաջնորդող յօդուածով մեծ համակրանքով է խօսում անցեալ ամսում կայացած Պետրոգրադի հայկական Համագումարի մասին։

Համեմատելով հայ ժողովրդի մեծ զոհաբերութիւնը Համագումարում արտայայտած հայ ժողովրդի համեստ ու չափաւոր խնդիրների հետ, լրագիրն ասում է.

«Անասելի ցաւ ենք զգում հայ ժողովրդի չարատանջ վիճակի համար, ժողովրդի, որ ընկել է Վիլհելմին տանող Թիւրքիայի կառքի տակ։»

Կանգ առնելով հայկական ջարդերի վրայ, լրագիրն ասում է.

«Զարհուրելի է երևակայել, որ մօտ 3 միլիոն ժողովրդից մէկ քառորդ միլիոնը կարիք է զգում օգնութեան ու խնամքի, փախչելով Ռուսաստան, երեք քառորդ միլիոնը կոտորուած է և մօտ երկու հարիւր հազար աքսորուած Միջագետք»։

Ապացուցելով չէզոք աղբիւրներից ստացուած փաստերով, որ այս թուերի մէջ ոչ մի չափազանցութիւն չկայ, «Н. В.» ընդգծում է, որ

«Բելգիայի ողբերգական տագնապը նսեմանում է մարտիրոսացած Հայաստանի տանջանքների առաջ»։

## ՊՈՍՏԱՐԿՂ

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ, Հ. Բ.-ին.—Ձեր նամակը չենք կարող տպագրել. իզուր էք դժգոհում, որ ճեմարանը «բարուքանդ անող» Բագրատ եպիսկոպոսը նշանակուել է առաջնորդ. Վեհափառ Հայրապետը՝ եղածներից է միայն ընտրութիւն արել, իսկ պարսկական թեմից, Սպահանից յետոյ Բագրատ եպիսկոպոսը միակ յարմարագոյն անձն է Շամախու թեմի համար։ Ոչինչ չունենք Ձեր ցանկութեան դէմ, որով ճեմարանի չորս տարուան տեսչութեան հաշիւը ցարդ չտուող Բագրատ եպիսկոպոսը թողնելով «սարահղարական» վարչական եղանակը և բարձի տակից հանելով անմահ Մոռիէի «Հաջի-Բաբան», հետը Շամախի և Բագու տանէր մի հատ իտալական հաշուապահական գիրք, որ նրան աւետարանի չափ կարևոր է։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Փոզոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военной цензурою

# ՅԱՒԵԼՈՒԱԾ № 23

# „ՀԱՄԲԱՐԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Էջմիածնի «Եղբայրական Օգնութեան» որբանոցում*

*25 փետր. 1916 թ.*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնողներից ով կայ | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 184 | Յասմիկ | Բաղնոց | 7 | մայր | Վաղարշապ-տ | " | |
| 185 | Յարթին | Մանզրա | 13 | հայր-մայր | " | այո | |
| 186 | Յակոբեան Ռուբէն | Ալճաւազ | 10 | հայր | " | ոչ | |
| 187 | » Մեսրոպ | » | 10 | մայր | " | " | |
| 188 | » Մկրտիչ | » | 6 | որբ | | " | |
| 189 | Յովհաննիսեան » | Վաղարշապատ | 8 | մայր | " | " | |
| 190 | » Սարգիս | Վան | 4 | որբ | | " | |
| 191 | Յովսէփ | Բերդ | 12 | որբ | | " | |
| 192 | Յարութիւնեան Զաքարեա | Մարմանդ | 12 | » | | " | |
| 193 | » Խուզրաթ | Արճէշ | 7 | » | | " | |
| 194 | Յովակիմեան Արտաշէս | Վան | 10 | » | | " | |
| 195 | Յովսէփեան Զարուհի | » | 9 | հայր | Վաղարշապ-տ | " | |
| 196 | Յովիկեան Ալմաստ | Շատախ | 8 | հայր | Անյայտ | " | |
| 197 | Յովհաննէս | Ղարաքիլիսէ | 12 | մայր | Էջմիածին | այո | |
| 198 | Յովհաննեան Սարգիս | Վան | 8 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 199 | Նանիկ | Արճակ | 7 | որբ | | ոչ | |
| 200 | Նիկար | Ալճաւազ | 13 | մայր | Էջմիածին | ոչ | |
| 201 | Նուարդ | Նազր | 13 | որբ | | այո | |
| 202 | Նաթանեան Ազատ | Վան | 7 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 203 | Նիկողոսեան Լուսնթագ | » | 10 | » | " | " | |
| 204 | Նշանեան Ազարիկ | Ալճաւազ | 10 | » | " | այո | |
| 205 | Ներսէսեան Վարդգէս | Հայոց Ձոր | 5 | որբ | | | |
| 206 | Նաչոյեան Զարդար | Կեաւաշ | 14 | մայր | Վաղարշապ-տ | ոչ | |
| 207 | Նիկոլ | Արճէշ | 12 | » | " | այո | |
| 208 | Նշան | Արտամէդ | 14 | որբ | | " | |
| 209 | Նազար | Ղարաքիլիսէ | 13 | մայր | Էջմիածին | " | |
| 210 | Շահպահ | Պզտիկ Գիւղ | 9 | որբ | | " | |
| 211 | Շողիկ | Կեաւաշ | 15 | մայր | Էջմիածին | " | |
| 212 | Շուշանիկ | | 6 | | | | |
| 213 | Շարպաթ | Ջրկիր (Վան) | 12 | որբ | | " | |
| 214 | Ոսկո | Խաւէն | 10 | հայր | Համելար | ոչ | |
| 215 | Պայծառ | Արտամէդ | 8 | մայր | Էջմիածին | " | |
| 216 | Պօղոս | Արճէշ | 12 | որբ | | " | |
| 217 | Պետրոս | Խումարա | 14 | » | | " | |
| 218 | » | Առնշկուս | » | մայր | Էջմիածին | " | |
| 219 | Պուղագեան Մելքոն | Վան | 7 | որբ | | " | |
| 220 | Պօղոսեան Եղիազար | Պերկր | 8 | » | | " | |
| 221 | " Սեդրակ | Արոտ | 8 | » | | " | |
| 222 | " Հրանտ | Վան | 11 | մայր | Վաղարշապ-տ | " | |
| 223 | Պետրոսեան Վարդան | Կոբ | 13 | հայր | Թէօր վազա | այո | |
| 224 | » Ցոլակ | Հայոց Ձոր | 11 | մայր | » | " | |
| 225 | Ջիչօ | Բարտօ | 6 | մայր | Էջմիածին | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 226 | Ռուբէն | Ալճաւազ | 14 | որբ | | ոչ |
| 227 | Սիրարբի | Պուլանըխ | 8 | հայր-մայր | Երևան | ոչ |
| 228 | » | Ճա պաղի | 9 | որբ | | |
| 229 | » | Վան | 11 | հայր | Վերադ. երկ. | " |
| 230 | Սարգսեան Անդրանիկ | Գարադըշլա | 8 | որբ | | " |
| 231 | " Երուանդ | Արճէշ | 10 | » | | " |
| 232 | " Սեդրակ | Կեաւաշ | 10 | մայր | Օշական | " |
| 233 | " Գուրգէն | Տոմա | 11 | որբ | | " |
| 234 | Սերոբեան Արմենակ | Արճէշ | 10 | մայր | Վաղարշապ-տ | այո |
| 235 | » » | Բայէզի | 11 | » | | |
| 236 | Սեդրակ | Սոսրաթ | 12 | » | | " |
| 237 | Սաթենիկ | Արդեան | 12 | անյայտ | | ոչ |
| 238 | Սանդուխտ | Կոչեր | 11 | որբ | | " |
| 239 | Սայրօ | Պուլանըխ | 9 | մայր | Կեջիկլի | " |
| 240 | Սանամ | Հան գիւղ | 10 | որբ | | " |
| 241 | Սալամ | Կարկառ | 15 | հայր | Գանձակ | |
| 242 | Սիմէ | Վան | 10 | որբ | Հայրը կորած | |
| 243 | Սիրանոյշ | Կեամ | 8 | հայր խ. մ. | Էջմիածին | |
| 244 | Սաթենիկ | Սիկեաւ | 12 | հայր | Վերադ. երկ. | |
| 245 | Սարկիւլ | Հարնօ | 12 | որբ | | ոչ |
| 246 | Սալւի | Ալճաւազ | 14 | » | | " |
| 247 | Սիրանոյշ | Հանչըղ | 9 | » | | " |
| 248 | Սանդուխտ | Խլաթ | 12 | մայր | Էջմիածին | այո |
| 249 | Սալամ | Կարճկան | 15 | հայր | Գանձակ | ոչ |
| 250 | Սիրանոյշ | Վան | 13 | որբ | | այո |
| 251 | Սեդօ (աղջիկ) | Հասնա | 9 | մայր | Էջմիածին | " |
| 252 | Սարրօ | Եօնճալըխ | 11 | » | Շահրիար | ոչ |
| 253 | Սուսիկեան Պօղոս | Ալուր | 9 | որբ | | " |
| 254 | Սուրէն | | 9 | ամս. » | | " |
| 255 | Սախոյեան Վարդանոյշ | Արճէշ | 8 | հայր | Վաղարշապ-տ | " |
| 256 | Սիրանեան Մայրանոյշ | Կըզըլտաղ | 6 | որբ | | " |
| 257 | Սահակեան Թորգոմ | Վան | 10 | հայր | Վաղարշապ-տ | ոչ |
| 258 | » Գուրգէն | Ոսկերակ | 4 | որբ | | " |
| 259 | Սիմոնեան Արմենակ | Կարճկան | 12 | մայր | Վաղարշապ-տ | " |
| 260 | » Յարութիւն | Վան | 7 | մայր | Մարգարա | այո |
| 261 | Վարդանոյշ | Եխնթար | 8 | որբ | | ոչ |
| 262 | » | Կարծնես | 10 | » | | " |
| 263 | » | Խաշարլու | 12 | » | | " |
| 264 | » | Գէօմուէ | 14 | » | | " |
| 265 | Վարդիկ | | | | | " |
| 266 | Վարդօ | Փշաղնից | 13 | մայր | Էջմիածին | |
| 267 | Վարդանեան Սերոբ | | | | | |
| 268 | " Աղասի | Արտամէդ | 2 | մայր | Վաղարշապ-տ | ոչ |
| 269 | " Յովհաննէս | Վան | 4 | որբ | | " |
| 270 | " Սամուէլ | Բերդ Ալաշկերտ | 10 | » | | " |
| 271 | " Աբրահամ | » | 6 | » | | " |
| 272 | " Գիւլնազ | Արճէշ | 10 | մայր | Դըլթամուր | " |
| 273 | Տ. " Խաչատուր | Արճէշ | 13 | որբ | | այո |
| 274 | Վարդանեան Գրիգոր | Վան | 12 | հայր | Վաղարշապ-տ | " |
| 275 | » Արամ | Կոճեր | 10 | մայր | Օշական | " |
| 276 | Վարժօ (Վերժոկ) | Ատրլուկ | 12 | որբ | | ոչ |
| 277 | Տիգրանեան Երուանդ | Ալաշկերտ | 6 | մայր | Վաղարշապ-տ | ոչ |
| 278 | Փանոսեան Եալտուզ | Սևան | 10 | որբ | | ոչ |
| 279 | Փայլեան Մարիամ | Վան | 5 | մայր | Վաղարշապ-տ | » |
| 280 | Քրիստինէ | Վան | 12 | մայր | Էջմիածին | այո |
| 281 | Օդիկ | Մարման | 10 | որբ | | ոչ |
| 282 | Ֆիտան | Բատնոց | 6 | հայր-մայր | Էջմիածին | » |
| 283 | Ֆուլիկ | Վաղարշապատ | 9 | մայր | » | » |
| 284 | Ֆէրման | Բատնոց | 10 | որբ | | » |

Ալէքսանդրապոլի գաղթականական «Միացեալ-Որբանոցների» որբերի. 1916 թ. մայիս.

| №№ ըստ կարգի | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Որտեղացի է | Ծնողներ ունի | Ծանօթութիւն |
|---|---|---|---|---|---|
| 1 | Ասլանեան Վարսենիկ | 11 | Արդահանցի | չունի | |
| 2 | Ասլանեան Մելքոն | 8 | « » | » | |
| 3 | Աւետիսեան Սեդրակ | 12 | Օլթեցի | » | |
| 4 | Աւետիսեան Աւետիս | 10 | « » | » | |
| 5 | Աւագեան Վահրամ | 6 | Վանեցի | » | |
| 6 | Աւագեան Վարդան | 8 | « » | » | |
| 7 | Առաքելեան Սրապիոն | 11 | Զետկացի (Ալաշկ. շր.) | մայր ունի | |
| 8 | Արսէնեան Վարդանոյշ | 5 | Կոփեցի (Բիթլիս) | չունի | |
| 9 | Գրիգորեան Յակոբ | 8 | Աքարակցի(Նարիման) | մայր ունի | |
| 10 | Գաբրիէլեան Արամ | 7 | « » | չունի | |
| 11 | Մանուկեան Աստուածատուր | 12 | Կոփեցի(Բիթլիս. վիլ.) | » | |
| 12 | Մարգարեան Գէորգ | 12 | Բշաձորցի (Էրզր. շր.) | » | |
| 13 | Մելիքեան Սարգիս | 7 | Իրիգուկցի (Էրզր. շր.) | » | |
| 14 | Մուրադեան Աղաբէկ | 11 | Բիթլիսցի | » | |
| 15 | Յակոբեան Անդրանիկ | 12 | Ագարակցի (Նարիման) | մայր ունի | |
| 16 | Հայրապետեան Սմբատ | 8 | Մաջիթլեցի (Էրզ. շր.) | » | |
| 17 | Զուխաճեան Սամսոն | 10 | Ղարաղցի(Բիթլիս, շր.) | չունի | |
| 18 | Զուխաճեան Տաճատ | 12 | « » | » | |
| 19 | Զուխաճեան Սերոբ | 11 | « » | մայր ունի | |
| 20 | Պետրոսեան Յովհաննէս | 7 | Շխլեցի (Թերջան շր.) | » | |
| 21 | Յովհաննիսեան Ազիզ | 8 | Շէյխ-եաղուբ(Բիթլիս) | չունի | |
| 22 | Մկրտչեան Հռիփսիմէ | 10 | Օլթեցի | մայր ունի | |
| 23 | Բաղդասարեան Դաւիթ | 11 | Բոստաքեանդ (Բիթլ.) | չունի | |
| 24 | Տօնոյեան Մկրտիչ | 10 | Փրկաշէն (Մուշ-Բիթլ.) | » | |
| 25 | Մարգարեան Այվազ | 10 | Թշաչորցի (Էրզ. շր.) | հայր և մայր | |
| 26 | Տօնոյեան Սեդա | 8 | Փրկաշէն (Մուշ-Բիթլ.) | չունի | |
| 27 | Մարգարեան Պարգև | 8 | Թշաչորցի (Էրզ. շր.) | հայր և մայր | |
| 28 | Լեոնեան Հրանտ | 10 | Բիթլիսցի | մայր ունի | |
| 29 | Բաղդասարեան Քիշմիշ | 6 | Բոստաքեանդ (Բիթլ.) | չունի | |
| 30 | Մանուկեան Քեարամ | 10 | Ղարաղլցի(Մուշ-Բիթ.) | հայր ունի | |
| 31 | Արտաշեան Հրաչ | 9 | Խնուսցի | չունի | |
| 32 | Մարգարեան Լեոն | 8 | Թշաձոր (Էրզր.) | հայր ունի | |
| 33 | Հայրապետեան Նազիկ | 5 | Մաջիթլեցի (Բիթլ.) | մայր ունի | |
| 34 | Յակոբեան Բարդուղիմէոս | 12 | Վեքիխաս (Նարիման) | չունի | |
| 35 | Յակոբեան Երանոս | 10 | « » | » | |
| 36 | Աբովեան Մկրտիչ | 12 | « » | » | |
| 37 | Ղազարեան Անթառամ | 10 | Խարաբշարցի (Վան) | » | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 38 | Վեցիկեան Վարսենիկ | 8 | Վանեցի | » |
| 39 | Վեցիկեան Շուշանիկ | 9 | « » | » |
| 40 | Գրիգորեան Հայկանոյշ | 7 | Արտոնքցի(Մուշ-Բիթ.) | » |
| 41 | Գրիգորեան Սարգիս | 5 | « » | » |
| 42 | Վարդանեան Ենովք | 9 | Ծղաքցի (Մուշ) | » |
| 43 | Սարոյեան Վարդանոյշ | 8 | Փարճուկցի(Մանազկ.) | » |
| 44 | Կոթոլեան Միսակ | 8 | Ագարակցի(Նարիման) | » |
| 45 | Մարգարեան Արտաշէս | 9 | Ջետկանցի (Ալաշկ.) | » |
| 46 | Մարգարեան Արեհատ | 7 | « » | » |
| 47 | Մանուկեան Վահան | 12 | Ագարակ (Նարիման) | » |
| 48 | Մանուկեան Վահինձ | 10 | « » | » |
| 49 | Սերոբեան Մալազ | 10 | Նորաշէն (Ալճաւազ) | » |
| 50 | Յարութիւնեան Գրիգոր | 12 | Ագարակ (Նարիման) | » |
| 51 | Թովմասեան Հմայեակ | 8 | Ջետկանցի (Ալաշկ.) | » |
| 52 | Կոթոլեան Հմայեակ | 8 | Ագարակցի (Նարիման) | » |
| 53 | Մկրտչեան Ջանազան | 10 | Փխանդովրեցի (Շատ.) | » |
| 54 | Գէորգեան Սերովբ | 10 | Ղարաղլցի (Մուշ) | » |
| 55 | Յովհաննիսեան Հայկանոյշ | 13 | Վանեցի | » |
| 56 | Շահրազեան Եղիշէ | 12 | Ջետկանցի (Ալաշկ.) | » |
| 57 | Խաչատրեան Մինաս | 10 | Ագարակցի (Նարիման) | մայր և հայր |
| 58 | Կոթոլեան Արտակ | 7 | « » | մայր |
| 59 | Յարութիւնեան Փայծառ | 8 | « » | » |
| 60 | Փօղոսեան Լեոն | 12 | Ջետկանցի (Ալաշկ.) | չունի |